**Լրացավ տիեզերագնացության տասը տարին**

# ԵՐԳ ԳԱԳԱՐԻՆԻ ՄԱՍԻՆ

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Նա սիրտ ուներ երկրի պես մեծ,
Աչքեր ուներ նա ծովի,
Նա աստղերի ճամփան կապեց
Իր անվան հետ պանծալի:
Մեր երազի կանթեղն առած՝
Երկինք թռավ որպես երգ,
Մեր հայրենի փառքը տարավ
Դեպի անհուն տիեզերք:
Ճանապարհով նրա բացած
Շատ խիզախներ նավեցին
Ու երկնախույզ ձեռքեր դարձած՝
Աստղաբույլեր քաղեցին:
Թռան երկինք ու երկնքից
Գիրկը դարձան մայր հողի,
Բացվեց ճամփան որպես կյանքի
Ու երազի մայրուղի:

# Հ Ր Ա Շ Ա Լ Ի

ԳՐԻԳՈՐ ՀԱԿՈԲՅԱՆ

Վաղ առավոտից սկսած, իտալացի մի աղքատ պատանի կանգնած էր Կապրի կղզու ծովափին և դիմելով անցորդներին, աղերսագին ասում էր.

— Բարի՛ սինյորներ, խնդրեմ, համեցե՛ք նստեք իմ մակույկը՝ ձեզ տանեմ ծովային քարանձավ...

Բայց ոչ ոք չէր մոտենում նրա մակույկին:

Երեկոյան դեմ ափամերձ քարայրից դուրս եկան երկու օտարերկրացիներ և մոտեցան ծովափին:

— Բարի՛ սինյորներ,— նրանց դիմեց պատանին:

Օտարերկրացիները կանգ առան:

— Հիվանդ մայր ունեմ և փոքրիկ մի քույր: Իսկ տանը ուտելու ոչինչ չկա: Խնդրում եմ, նստեք իմ մակույկը՝ ձեզ տանեմ ծովային քարանձավ...

Օտարերկրացիներից յուրաքանչյուրը ձեռքը տարավ գրպանը և դուրս բերելով մի քանի լիրա, մեկնեց նրան:

— Այս ի՞նչ եք անում, բարի՛ սինյորներ,— խոսեց պատանին մի փոքր վիրավորված:— Ես մուրացկան չեմ: Ես փող չեմ մուրում: Ես աշխատել եմ ուզում:

— Վերցրու՛, փոքրի՛կս,— մաքուր իտալերենով ասաց ցածրահասակ օտարերկրացին, մի քայլ առաջ գնալով դեպի պատանին,— վերցրու և քեզ այնպես զգա, որ մեզ տարել ես ծովային քարանձավ:

— Օ՛, ո՛չ, ո՛չ: Չեմ կարող,— հուզված ասաց պատանին, ետ-ետ գնալով:— Ես աշխատել եմ ուզում և ոչ թե մուրալ:

Օտարերկրացիները տղայի համար անհասկանալի լեզվով ինչ-որ բան խոսեցին և հետո մակույկ բարձրացան:

Մակույկը դանդաղ առաջ սահեց: Օտարերկրացիները նկատեցին, որ տղան դժվարությամբ է թիերը շարժում:

— Տղա՛ս,— ասացին նրանք,— մենք վաղուց է, ինչ չենք թիավարել: Արդյոք չէի՞ր համաձայնի, որ մենք թիավարեինք: Դա մեզ ավելի մեծ հաճույք կպատճառի: Իսկ դու մի քիչ հանգստացիր:

Պատանին համաձայնեց: Նրանք թիերն առնելով, սկսեցին այնպես թիավարել, որ մակույկը կարապի նման թեթևասահ առաջ սլացավ դեպի Նեապոլի ծովածոցը:

— Անունդ ի՞նչ է,— հարցրին նրան:

— Անտոնիո Լուիջի:

— Անտոնիո Լուիջի՞: Գեղեցիկ անուն է: Իսկ քանի՞ տարեկան ես:

— Տասներեք:

— Դպրոց գնո՞ւմ ես:

— Գնում էի: Բայց էլ չեմ գնա:

# ՋՈՒԳԱԴԻՊՈՒԹՅՈՒՆ

Նկ. ՍՏԵՓԱՆ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

— Ինչո՞ւ:

— Նավավար հայրս խեղդվեց ծովում: Ընտանիքում ոչ մի աշխատող չկա: Ես պետք է աշխատեմ, որ հիվանդ մորս ու փոքրիկ քույրիկիս օգնեմ:

Տիրեց ճնշող լռություն: Մակույկի ընթացքը փոքրինչ դանդաղեց: Ջրերն ավելի թույլ էին ճողփում: Ասես նրանք էլ էին տխրել:

— Իսկ երգել գիտե՞ս— լռայի տխրությունը փարատելու համար հարցրին նրանք:

— Այո՛, մի քիչ,—համեստաբար ասաց Անտոնիոն:

Նրանք փաղաքուշ հայացքով նայեցին պատանուն.

— Դե երգի՛ր, տեսնենք մի քի՞չ գիտես, թե՞... շատ:

Տղան երգեց «Սանտա լուչիա» երգը:

— Դու պետք է որ մեծ ու անվանի երգիչ դառնաս,— ասացին նրանք:

— Սինյո՛ր, բայց ես աղքատ եմ: Իսկ աղքատն ինչպե՞ս կարող է մեծ ու անվանի մարդ դառնալ:

— Այս քեռուն տեսնո՞ւմ ես,— իր բարձրահասակ ընկերոջը մատնացույց արավ ցածրահասակ օտարերկրացին,—քեզ նման և դեռ ավելի աղքատ է եղել: Իսկ այժմ դարձել է մեծ ու անվանի մարդ, որին ամբողջ աշխարհն է ճանաչում:

Պատանին աչքերը հառեց բարձրահասակ օտարերկրացուն.

— Իսկ նա ո՞վ է որ...

— Մաքսիմ Գորկին:

— Մաքսիմ Գորկի՞ն... Լսել եմ: Գիտեմ: Մենք նրա գիրքն ունենք: Մայրս հաճախ է կարդում: Ես էլ...

— Այ՛, եթե դու էլ այս քեռու նման չհուսահատվես և ձգտես հաղթահարել դժվարությունները, մի օր հայտնի մարդ կդառնաս:

— Իսկ դուք, սինյո՛ր, դուք ո՞վ եք,—քիչ անց հարցրեց պատանին մյուսին, որի հուսադրող խոսքից այնպես ուրախացել ու ոգևորվել էր ինքը:— Երևի դուք էլ սինյոր Գորկու նման...

— Ո՛չ, տղաս, ես գրող չեմ: Ես սինյոր Գորկու հյուրն եմ:

— Այս սինյորը,—ասաց Գորկին,—աշխարհի բոլոր ճնշված մարդկանց բարեկամն է, հարազատ եղբայրը: Նա ուզում է, որ դու ոչ թե ստիպված լինես օրվա ապրուստի համար մակույկ թիավարել, այլ քո սիրած գործով՝ երգեցողությամբ զբաղվես և ապրես ազատ ու երջանիկ:

Նրանք մոտեցել էին ափին:

— Դե՛, սիրելի՛ս, վերցրու քո աշխատանքի վարձը և տուն վերադարձիր,—ասացին պատանուն, ամեն մեկը մի բուռ լիրա մեկնելով նրան:

Պատանին ուզում էր ինչ-որ բան ասել, բայց չկարողացավ:

— Անտո՛նիո, քեզ ի՞նչ է պատահել: Չէ՞ որ քեզ սպասում են հիվանդ մայրդ ու փոքրիկ քույրիկդ: Ինչո՞ւ չես շտապում տուն: Դե, վերցրո՛ւ և խսկույն տուն գնա:

Բայց տղան լուռ էր:

— Անտո՛նիո, ինչո՞ւ քո վարձը չես ստանում:



— Ախր, բարի՛ սինյորներ, ես ինչպե՞ս փող վերցնեմ սինյոր Գորկուց և այն մարդուց, որ հոգ է տանում իմ և բոլոր ինձ նմանների մասին,—ասաց Անտոնիոն:

— Վերցրո՛ւ, վերցրո՛ւ, շուտ գնա և ինչ որ կարող ես, առ տար տուն: Դու ուշանալու իրավունք չունես: Քեզ տանը սպասողներ կան,—ասացին Գորկին ու իր հյուրը և դրամը նրա գրպանը խոթելով, հրաժեշտ տըվեցին խալացի պատանուն ու արագ հեռացան:

Անցան տարիներ:

Անտոնիոն իմացավ, որ այն օրը իր մակույկով Գորկու հետ զբոսանքի էր տարել մի մարդու, որի անունը այժմ ամբողջ աշխարհի աշխատավորների շըրթունքների վրա էր. դա ամբողջ աշխարհի աշխատավորության առաջնորդ մեծ Լենինն էր եղել:

Անտոնիոյին այնպես էլ չհաջողվեց սիրած գործով զբաղվել: Նա շարունակում էր իր հացը վաստակել նույն իր մակույկով: Բայց այդ մակույկն այլևս մի սովորական մակույկ չէր՝ նման մյուսներին: Բոլորին, ովքեր Անտոնիոյի մակույկով զբոսանք էին կատարում, Անտոնիոն պատմում էր, որ ահա այսպես, իր այս մակույկով զբոսանք են կատարել Գորկին ու Լենինը:

Օրերից մի օր Կապրի այցելեց մի հայ բանաստեղծ: Մի հրաշալի զուգադիպությամբ նրան վիճակվեց Անտոնիոյի մակույկով զբոսանք կատարել ծովի վրա և լսել նրանից այս պատմությունը: Բանաստեղծը տեղնուտեղը հղացավ մի պոեմ,որ պիտի գրեր: Նա ինքը այս ամենը Երևանում մի հավաքույթի ժամանակ պատմեց գրական ստուդիայի իր ունկնդիրներին, որոնցից մեկն էր տողերիս հեղինակը:

Այդ բանաստեղծը Եղիշե Չարենցն էր:

Ափսո՛ս, նա չհասցրեց այդ պոեմը գրել:



# Գ Ա Ր Ո Ւ Ն

### ԹԱԹՈՒԼ ԲՈՒՈՐՋՅԱՆ

Ինչ լա՛վ եղավ, եկար, գարո՛ւն,
Վարարել է փոքրիկ առուն,
Թիթեռները եկել նորից,
Մեր պարտեզում գտել են ինձ:
Հիմա ելնեմ բներ շինեմ
Եվ մոտ կանչեմ սարյակներին,
Ջուր տամ կանաչ ծիլ ու ծաղկին,
Գույներն հաշվեմ ծիածանի:
Ինչ լա՛վ եղավ, եկար, գարո՛ւն,
Հավքեր բերիր սիրուն-սիրուն:
Քո արևը բաց երկնքից
Մայրիկիս պես գրկել է ինձ:



մ հայրիկը կացինն առել, գնում էր գոմ սարքելու: Իմ մայրիկը գոգնոցը կապել, գնում էր հանդ՝ կարտոֆիլ հավաքելու: Իմ հորեղբայրը եղանն ուսել, գնում էր սարերում խոտ դիզելու: Բակում, արևի տակ, ես նստել էի կոճղին և հաց ուտելով կարդում էի քաջագործությունների մասին մի գիրք:

Օրը կիրակի էր: Դպրոցում հայերենից ես պայծառ «գերազանց»-ներ էի ստանում, ռուսերենից, մաթեմատիկայից, աշխարհագրությունից, բոլոր առարկաներից ես ստանում էի պայծառ «գերազանց»-ներ: Քաջագործությունների մասին գիրքը լավ գիրք էր: Իմ հայրիկը լավ հայրիկ էր: Իմ մայրիկը ինձ շատ էր սիրում: Իմ հորեղբայրը գեղեցիկ և ուժեղ տղամարդ էր: Մեր տան քիվի ծիծեռնակները երկնքի կռունկների հետ չվել գնացել էին: Այգու և անտառի վրա խշշալով աշուն էր իջնում: Եթե մեր խոյերը կորած չլինեին՝ այդ պահին աշխարհում ամեն ինչ անչափ գեղեցիկ կլիներ:

Կացինը թևին, գոգնոցը կապած, եղանն ուսին՝ աշխատանքի գնալուց առաջ նրանք նայում էին ինձ և թաքուն հրճվում, որ իրենց որդին մեծանում է, այտն ահա ձեռքին է դրել և գիրք է կարդում: Գոգնոցը կապած՝ իմ մայրիկը մտածեց՝ ասե՞լ, թե՞ չասել, և որոշեց չասել, որդուն չխանգարել, որդին թող կարդա ու դառնա գիտնական: Կացինը թևին՝ իմ հայրիկը մտածեց՝ խնդրե՞լ, թե՞ չխնդրել: Դարձյալ մտածեց՝ խնդրե՞լ, թե՞ չխնդրել, և որոշեց չխնդրել, որդին թող կարդա, հաց ուտելով թող կարդա: Ես կարդում էի և զգում, որ նրանք ուզում են խոյերի մասին ինձ բան ասել, բայց ես ցույց էի տալիս, թե ոչինչ չեմ զգում, այլ միայն կարդում եմ քաջագործությունների մասին գիրքը, քանի որ լավ է, շատ լավ է, երբ գրքերի մեջ ուրիշները գնում են, թռչվում են, մրսում են, կռվում են, պարտվում են, հաղթում են, և վատ է, անչափ վատ է, երբ ես ինքս եմ գնալու, հոգնելու, գտնելու կամ չգտնելու մեր խոյերը:

Գոմը պետք է անպայման սարքվեր, կարտոֆիլը պետք է անպայման հավաքվեր, խոտը պետք է անպայման դիզվեր, ուրեմն հայրիկը, մայրիկը, հորեղբայրը չէին կարող չգնալ ձմեռվանից առաջ գոմը սարքելու, կարտոֆիլը հավաքելու, խոտը դիզելու: Եվ իմ հայրիկը ինձ ասաց.

— Եթե քեզ մի բան խնդրե՞մ:

Ես գիտեի, թե ինչ է խնդրելու հայրիկը, բայց հարցրի.

— Ի՞նչ խնդրես:

Եվ շատ մեծ ամոթ էր, որ գիտեի, սակայն չիմանալու էի տալիս նրա խնդրանքը:

— Մեր խոյերը Պարկ բացատում տեսնող է





# ՀԱՅՐ

*ՀՐԱՆՏ ՄԱԹԵՎՈՍՅԱՆ*

եղել,— ասաց իմ հայրիկը:

— Ո՞վ է տեսել,— հարցրի ես:

— Անտառապահը:

— Ե՞րբ է տեսել,— հարցրի ես:

— Երեկ իրիկուն:

Ես կարողացա չհարցնել՝ «ինչո՞ւ է տեսել»: Ես ասացի.

— Պարկ բացատը որտե՞ղ է:

— Դու կարծեմ լավ գիտես, թե որն է Պարկ բացատը:

— Էն հեռո՞ւմ:

Նա չպատասխանեց, և ես հասկացա, որ նա ինձանից մի քիչ նեղանում է:

Ես հարցրի.

— Ուզում ես գնամ գտնեմ բերե՞մ մեր խույերը:

— Ես ոչինչ էլ չեմ ուզում,— ասաց նա:

— Մեր խույերը Պարկ բացատում տեսնող է եղել, հետո՞,— ասացի ես:

Առանց պատասխանի նա շուռ եկավ գնալու:

— Լավ,— ասացի ես,— կգնամ: Բայց եթե էնտեղ չլինեն ի՞նչ անեմ:

— Չգիտեմ:

Նա իրոք նեղանում էր, որովհետև ինքը չէր կարող փնտրելու գնալ, իսկ ես տալիս էի ալարկոտ անբանի հարցեր:

— Ներողություն,— ասաց նա,— գիրքդ կարդա, ներողություն:

— Լավ,- ասացի ես,— հետքները կգտնեմ, հետքով էլ իրենց կգտնեմ:

Աշնան արևը մեղմորեն ջերմ էր: Աշնան մեղմ արևի մեջ գեղեցիկ էին ծիծեռնակների լուռ բները, այգու խնձորենիները, որոնք դեռ ունեին մի երկու խնձոր, իմ մայրիկի մեղմ ժպիտը, շիկավուն շունը, որ պառկել էր իմ ոտքերի մոտ ու ննջում էր, և աքաղաղի կարմիր կատարը, և կեռասի ծառը, որ հանկարծ սկսեց ծվծվալ: Ես նայեցի այգուն, տեսա կեռասի ծառը և դեղնափորիկ թռչունին, որ այդքան ուշ աշունով ծառին կեռաս էր գտել և պարմանքից ծվծվում էր: Ես հասկացա, որ աշնան մեղմ արևի մեջ ամեն ինչ թախծոտ ու գեղեցիկ է և միակ տգեղը ես եմ, որովհետև ձևացնում եմ, թե գրքի պատճառով չեի ուզում մեր խույերը փնտրելու գնալ:

Ես, ուրեմն, ասացի.

— Գիրքը կկարդամ իրենց մոտ:

— Շնորհակալ կլինեմ,— ասաց իմ հայրիկը:— Ուզում ես՝ շունը թող մնա հավերին պահակ, ուզում ես՝ հետդ տար: Շնորհակալություն,— կրկին ասաց նա, և ես մի քիչ ամաչեցի:

— Լավ,— ասացի ես,— շունը հետս կտանեմ:

Նրանք ինձ հագցրին բրդե տաք ու փափուկ սվիտըր, որ մայրիկն էր երեկոները գործել ինձ համար, հագցնել տվին ռետինե տակերով թեթև կոշիկներ, որպեսզի կաշվետակ կոշիկներով խոտերի վրա հանկարծ չսայթաքեմ, և ինձ նայեցին գուրգուրանքով, քանի որ սվիտերն ինձ շատ էր սազում և ես իրենց որդին էի:

— Հիմա՞ գնամ,— ասացի ես:

— Քո և հորեղբոր ճանապարհը մինչև Կույր աղբյուր նույնն է, հորեղբոր հետ մինչև Կույր աղբյուր գնա, էնտեղից կթեքվես Թփուտ կածանով դեպի Պարկ բացատ:

Շունը չէր ուզում գալ: Ես նորից կանչեցի, նա դանդաղ ելավ ու ծուլորեն հետևեց մեզ: Նա ճանաչում էր Դիմաց անտառի գող ուրուրին, Դիմաց անտառի գող ուրուրը ճանաչում էր նրան: Նրանք վաղուցվա ծանոթներ էին: Դիմաց անտառի գող ուրուրը չէր ճախրում բազեի պես բաց ու բարձր, նա մեր հավերին մոտենում էր թփից թուփ և ծառից ծառ անցնելով, գրեթե սողալով: Շունը դարձյալ կանգ առավ: Ես տեսա գորշ ուրուրի գողունի թռիչքը թփուտից-թփուտ, բայց ես մտածեցի, որ շանը տանում եմ նույնքան կարևոր գործի, ինչքան կարևոր է հավերի հսկողությունը, և սուլոցով կանչեցի շանը: Նա մեր ետևից գալիս էր ակամա, ապա, երբ գյուղից դուրս էինք եկել և մոռացել էր ուրուրի մասին, ուրախ վնգստոցով նա առաջ սլացավ ու գնաց: Նա կարոտել էր անտառին, խույերին, վայքին, հոգնածությանը:

Տանը իմ գրասեղանն էր, լուսամփոփի ջերմ ու շոյող լույսը, իմ փոքրիկ գրադարանը, ռադիոյի մեղմ երգը և, իմ թախտին, ուղտի բրդից գործած հաստ շալը՝ ցերեկային քնի համար: Անտառում արջերն էին, փղերը, վագրերը, հովազները, սատանաները, դևերը և հրեշները. մեր խույերից և իմ ապնվորությունից բացի, բոլորն էլ անտառում էին, և ես գնում էի դանդաղ, իմ հորեղբորից ետ մնալով: Ես բացել էի գիրքը և գնում էի գրքին նայելով. իբր թե չեմ կարողանում կտրվել գրքից և ետ եմ մնում կարդալու պատճառով:

Կույր աղբյուրի մոտ, որտեղ ճամփաբաժանն էր, շունը կանգնել էր և սպասում էր մեզ: Աղբյուրը Կույր էր կոչվում, որովհետև ստորգետնյա իր խորքերից նա մանրահատիկ ավազ էր հանում, ավազը փակում էր նրա աչքը: Աչք-ակն-ակնոց-ակնաբույժ՝ աչքի բժիշկ. աղբյուրի աչք-ակն-ակունք՝ աղբյուրների ակներ-աչքեր: Կույր աչք, Կույր աղբյուր,— մտածեցի ես և ինձ «գերապանց» նշանակեցի: Աղբյուրը դարձյալ լցվել

էր մանրահատիկ ավազով ու տիղմով, փակ ակունքի ետևում գետնի տակ աղբյուրը գուցե խեղդվում էր:

Իմ հորեղբայրը նայում էր արդեն ճահիճ դարձող աղբյուրին: Հանդի իր պայուսակից նա հանեց հանդի իր ուտելիքը, խաշած հավը կիսեց, փաթաթեց լավաշ հացի մեջ, այդ փաթեթը փաթաթեց թերթով և դրեց թևիս տակ: Եվ գլխով ցույց տվեց Պարզ բացատի կածանը:

— Ուզում եմ ջուր խմեմ,— ասացի ես:

— Պարզ բացատի աղբյուրից կխմես,— ասաց նա,— մեծ կաղնու տակ է, գնացեք:

Ուրախ կլանչոցով շունը նետվեց դեպի կածան: Մի պահ ես էլ ուրախացա ու վազեցի: Խաշամը խըշխըշում էր խլացնելու չափ ուժգին ու չոր: Այդ խըշխըշոցն էր, երբ վազում էի՝ իմ ականջներում միայն այդ խշխշոցն էր: Խաշամը հասնում էր ծնկներիս: Երբ կանգ էի առնում՝ լուռ լռություն էր, այդ լռության ու լույսի մեջ հազիվ լսելի սվսվալով օրորվում էին թափվող տերևները: Սև մոշահավը կչկչոցով թռավ իմ ոտքերի տակից, և դարձյալ խոր լռություն էր: Ինձ թվում էր, թե ես լսում եմ անտառի խաղաղ շնչառությունը:

Ես ետ նայեցի: Իմ հորեղբայրը ծնկել էր աղբյուրի մոտ և ինչ-որ բան էր անում: Մի քիչ էլ խորանալով անտառի մեջ՝ ես դարձյալ ետ նայեցի: Ինձ թվաց, թե հորեղբայրն արդեն գնացել է, բայց չէր գնացել, դեռ կռացած էր աղբյուրի վրա և դժվար էր նկատվում, քանի որ հողագույն էին և՛ ճանապարհը, և՛ նրա հագուստը: Ես ծառի ետևը նստեցի և, որպեսզի ինքս ինձ խաբեմ, թե որևէ բան եմ անում, բացեցի սխրագործությունների մասին գիրքը: Գիրքը, սակայն, ես չէի կարդում. գրքի վրա կռացած՝ ես սպասում էի, թե իմ հորեղբայրը երբ է հեռանալու վերադարձի ճանապարհից: Նա հիմա նստել էր աղբյուրի մոտ, ծխում էր և, ինչպես ինձ էր թվում, նայում էր անտառի մեջ ինձ: «Օրինակ, ինչո՞ւ ես էդպես պարապ նստել,— մտածեցի ես,— խոզ գտնելը ձեր գործն է, գիրք կարդալը՝ իմ. ես ահա կարդում եմ իմ գիրքը, իսկ դուք պարապ նստել եք»: Եվ որպեսզի ինքս ինձ ավելի խաբեմ, ես ականջներս փակեցի մատներով ու նայեցի միայն գրքին: Իբր թե կարդում եմ, իբր թե միայն կարդում եմ:

Հեռավոր թույլ խշխշոց էր լսվում: Ես իմ յացքս գրքից բարձրացրի և ականջներս բացեցի. խշխշոցը շատ ուժեղ էր և շատ մոտիկ: Բայց ես չհասցրի վախենալ, որովհետև նույն պահին էլ տեսա մեր շանը: Նա թափով կպավ ինձ, ցատկեց, նորից ցատկեց, վնգստաց ու կանչեց դեպի Պարզ բացատ: Որպեսզի նա նորից չկլանչի ու խշխշացնի, ես իմ հացի կեսը տվեցի նրան, և նա ծառի ետևը ինձ մոտ նստեց ու սպասեց, թե էլ ինչ եմ տալու:

Հավի սպիտակ թել-թել մսերը ես կերա, ոսկորը տվեցի նրան: Վզի կաշին ես կերա, ոսկորը տվեցի նրան: Մի քիչ դժվար էր ուտվում, որովհետև ես չէի գնացել խոզերը փնտրելու, բայց ես ուտում էի: Հավի չտեսնված համով ոտը ես կերա, ոսկորը տվեցի շանը:— Ես էլ քեզ,— ասացի շանը:

Աղբյուրի մոտ հիմա մարդ չկար: Ես կածանով իջա դեպի ճանապարհ:— Գնացինք,— ասացի ես շանը: Նա նայում էր ինձ և տեղից չէր ելնում, նա չէր հավատում, որ արդեն ետ ենք դառնում:

— Քո գործն է,— ասացի ես,— եթե ուզում ես մնալ՝ մնա:

Ես իջա ճանապարհ՝ աղբյուրի մոտ: Աղբյուրի ավազանում հիմա ցեխ ու տիղմ չկար, նրա ակը հիմա կույր չէր: Աղբյուրը հիմա բխում էր առատ ու ազատ, վարարությունից ուղղակի պարում էր: Նրա քարե կապույտ ավազանը լիքն ու պարզ էր: Նրա մաքուր հայելու մեջ ես տեսա իմ կուշտ ու հիմար դեմքը, ես ինձնից մի քիչ ամաչեցի, բայց շատ էի ծարավ, կռացա ջուր խմելու: Ես չհասցրի հասկանալ, որ այդ աղբյուրին ես արժանի չեմ՝ երբ արդեն ջուր էի խմում... Որ այդ աղբյուրը, որ հավի այդ միսը, որ այդ շունը, որ անտառի այդ խշշոցը, որ այդ հայրիկը, որ այդ մայրիկը, որ այդ բոլորը շատ լավն են, իսկ ես շատ վատը՝ դրա մասին ես չէի մտածում, ես կում առ կում խմում էի այդ ջինջ ջուրը: Ես ամենևին չէի մտածում, որ այդ աղբյուրը իմը չէ, ինձ չի պատկանում: Ես մի կուշտ խմեցի և գոհ էի:

Անտառից ես ձայն լսեցի, դա կարծես թե խոզի ձայն էր, ես մի քիչ դարձյալ ամաչեցի, բայց շարունակեցի գնալ դեպի տուն՝ դեպի իմ թախտը, իմ գրասեղանը, իմ տաքուկ անկյունը:

Երբ գյուղին բավական մոտեցել էի, տեսա, որ շունը դանդաղ գալիս է իմ ետևից:

— Չէիր ուզում՝ չգայիր,— ասացի ես շանը,— քեզ ո՞վ ստիպեց, քեզ ոչ ոք էլ չստիպեց:

Ուրուրը հավ գողացել էր թե չէր գողացել՝ ես չիմացա: «Հավերի հարցը մայրիկին է վերաբերում, թող մայրիկն էլ ստուգի՝ ուրուրը հավ թռցրել է թե չի թռցրել,— մտածեցի ես:— Աշխարհագրության իմ դասը գիտեմ, պատմության իմ դասը գիտեմ, մաթեմատիկայի իմ խնդիրը...»

Հայրիկը նստել էր թախտի եզրին և ժպտում ու տնքում էր: Նրա մեջքն, ուրեմն, նորից ցավում էր: Բայց թե ինչու էր ժպտում՝ ես չէի կարողանում հասկանալ:

— Էդ ռադիոն էդ ի՞նչ է երգում,— հարցրեց նա:

— Կոմիտաս:

— Ինքը գրե՞լ է, թե՞ ինքը երգում է:

— Ինքը գրել է, ինքը կոմպոզիտոր է:

Նա ժպտում էր, ապա ասաց.

— Ապրես, որ պատմությունն էդքան լավ ես սովորում:

— Ո՞վ ասաց:

— Ուսուցիչները եկել, ինձ օգնում էին: Վաղվա դասերդ գիտե՞ս:

— Գիտեմ:

— Շնորհակալություն,— ասաց նա:— Էդ ոչինչ, որ խոյերը չես գտել, ես հիմա կգնամ կբերեմ:

— Հիմա մութ է,— ասացի ես:

— Գելը երեկ գիշեր Մուշեղի խոյերն անտառում ջարդել է, վախենում եմ մերոնց էլ վնասի:

Նա ամեն վայրկյան ուզում էր թախտից ելնել և չէր ելնում: Նա չէր ուզում թիկնել, բայց ի վերջո թիկնեց:

— Որ պառկում եմ՝ չի ցավում,— ասաց նա:— Միայն Պա՞րզ բացատը նայեցիր, թե՞ ուրիշ տեղեր էլ փնտրեցիր:

— Պարզ բացատը նայել եմ,—ասացի ես:

— Ուրեմն, էլ Պարզ բացատ չեմ գնա,— ասաց նա,— ափսոս, ես հույս ունեի, որ էնտեղ կլինեն:

— Չգիտեմ,— ասացի ես,— կածանը խաշամով ծածկված էր, իմ նայածը չգիտեմ Պա՞րզ բացատն էր, թե՞ մի ուրիշ տեղ:

— Բացատի եզրին մի մեծ կաղնի՞ կար:

— Մի մեծ կաղնի կար, կաղնու տակ մի աղբյուր կար,— ասացի ես:

Ցավից ծամածռվելով նա ելավ միանգամից և փնտրեց գլխարկը: Նա այնքան էր հոգնած, որ չէր հասկանում, որ գլխարկն իր ձեռքին է:

— Ափսոս, որ Պարզ բացատում չեն եղել,—ասաց նա,— ուրեմն հեռացել, հասել են Խոր բացատ:

— Քո մեջքը ցավում է,— ասացի ես:

Նա ծաղրեց իր ցավը.

— Որ մթան մեջ տեսողությունդ լարում ես՝ ցավը մոռացվում է:

— Ես քեզ հետ գալիս եմ,— ասացի ես:

Նա ինձ չոյեց.

— Դու էսօր շատ ես ման եկել, հա՛ց կեր, մի քիչ հանգստացի՛ր ու քնի՛ր:

Երբ նա թաղվում էր մթան մեջ, ես բարձր ասացի.

— Ես էլ եմ գալիս:

— Ո՛չ,— կտրուկ ասաց նա,— դու գի՛րքդ կարդա:

Մթան մեջ՝ հնոցով ու փափուկ թափով մի բան անցավ. շունն էր, գնում էր իմ հայրիկի հետ փնտրելու, հեռու անհայտություններով գտնելու, բերելու մեր խոյերը, որոնց միսը ամբողջ ձմեռ ես պետք է ուտեի, որոնց գնով ես պետք է հագնեի տաք վերարկու, ունենայի դահուկներ, դահուկային կոշիկներ, փափուկ վզնոց, ականջակալ գլխարկ...

Մայրիկը ընթրիքի սեղան էր փռում: Ռադիոն կամացուկ երգում էր: Գրասեղանին չոյիչ կաթնալույս էր սփռում լուսամփոփը: Սպիտակ սփռոցին մարմրում էր լավ թխած սպիտակ հացը: Հացի կողքին՝ կարմիր տապակած կարտոֆիլը: Կարձ բոցերով վառվում էր օջախի փայտը: Թեյամանը մեղմ չխկչխկում էր: Ե՛վ թեյի արծաթե գդալն էր շատ գեղեցիկ, և՛ ընկույզի դարչնագույն մուրաբան, որ փայլփլում էր կաթնալույսի մեջ, և՛ գիշերն էր թավ ու տաք, և՛ տխուր էր միալնակ ծղրիդի ընդհատ երգը, որ լսվում էր երբեմն սեղանի մոտից, երբեմն՝ օջախի, երբեմն՝ իմ թախտի: Այդ բոլորը տխուր ու գեղեցիկ էին և ստեղծված էին ինձ համար, բայց ես արժանի չէի դրանք ուտելու, դրանք զգալու, դրանց նայելու, դրանք լսելու:

— Ես հաց չեմ ուտում,— ասացի ես,— մտա անկողին և շուռ եկա դեպի պատը: Ե՛վ բրդի ու փետուրի փափկությունն էր ափսոս, և՛ անկողնի ձերմակ մաքրությունը: Մայրս մոտենում էր, ես աչքերս փակեցի: Նա ծածկեց իմ մեջքը և մրմնջաց.

— Երեխաս էսօր շատ է չարչարվել:

## Հասկն ու փուշը

*ՄՆԱՑԱԿԱՆ ԹԱՐՅԱՆ*

Գոռոզ փուշը քիթը ցցած,
Մի օր լեցուն հասկին ասաց.
— Ա՛յ կախգլուխ, խելքից թեթև,
Գոնե մի քիչ նայիր վերև.
Մի տես, ո՞նց է օրը բացվում,
Ծառ ու ծաղիկ կյանքով լցվում,
Զարմանում եմ մարդու վրա,
Հապա նայիր խելքին նրա՝
Թողած ինձ պես փարթամ բույսը,
Քեզ հետ՝ կապել ամբողջ հույսը,
Ասա՝ ի՞նչ է քո մեջ գտել,
Ո՞նց ես նրա սիրտը մտել:
— Դե, ի՞նչ ասեմ,—հասկը խոսեց,—
Սար ու ձոր կա իմ ու քո մեջ.
Փուչ գլուխն է վերև նայում,
Լիքը՝ վար է միշտ խոնարհվում:

# ՀՈՐԱՔՈՒՅՐ ԱԼՄԱՍՏԸ



*ՆԱԻՐԻ ԶԱՐՅԱՆ*

Հորաքույր Ալմաստը ջահել ժամանակ լինում է շատ սիրուն և մի լավ երիտասարդի հետ նշանվում է: Բայց հորաքույր Ալմոյի նշանածը թուրք ոստիկանի հետ կռվում է, որովհետև չէր ցանկանում նրան դիշքիրասի տալ: Դիշքիրասի նշանակում է ատամնավարձ: Թուրքերը գալիս էին գյուղ, մեկի տանը գիշերում և հաց էին ուտում, հետո էլ պահանջում էին, որ տան տերը նրանց ատամնավարձ տա այն բանի համար, որ նրանք տանտիրոջը մեծ պատիվ են արել՝ նրա հացն ուտելով:

— Համ տանս տապակած հավ ու ձվածեղ ուտես, համ ես քեզ փարա՞ տամ,— ըմբոստանում է հորաքույր Ալմոյի նշանածը:— Չեմ տա: Դու պետք է ինձ փարա տաս նրա համար, որ տանս համ քնել ես, համ էլ հավ ու ձվածեղ կերել:

Ոստիկանը կատաղում է և սկսում է ծեծել հորաքույր Ալմոյի նշանածին: Սա էլ է կատաղում, կաղնի կոպալով խփում է թուրքի գլխին և գետին փռում: Հորքուր Ալմոյի նշանածին տանում են Արչակ, այնտեղ բանտարկում են և սպանում:

Դրանից հետո հորաքույր Ալմաստը ուխտ է անում էլ ոչ ոքի հետ չնշանվել, ոչ ոքի հետ չպսակվել. մինչև մահ մնալ կույս:

Այդպես էլ նա մնացել էր մեր տանը, դարձել մեր ընտանիքի անդամ: Նա իմ հայրիկից մեծ էր տարիքով և նրա պես բարձրահասակ: Ես հիշում եմ նրա խոշոր խումար աչքերը և աշխատանքի մեջ կոշտացած բարակ ձեռքերը, որոնցով նա սիրում էր իմ գլուխը շոյել:

Հորաքույր Ալմոն շատ էր սիրում ինձ: Բոլորից ավելի շատ: Նա կատարում էր իմ բոլոր ցանկությունները, ներում էր իմ բոլոր հանցանքները և թույլ չէր տալիս, որ մեկնումեկն ինձ ասի՝ քո աչքի վերև հոնք կա: Մայրս ինձ հաճախ դնգսում էր իմ անսպառ չարությունների համար, հորաքույր Ալմոն ինձ առնում էր իր պաշտպանության տակ, և այդ պատճառով նրանք իրար հետ կռվում էին ու խռովում իրարից:

Չնայած որ մայրս ինձ դնգսում էր, իսկ հորաքույրս՝ երես տալիս, ես մայրիկիս բոլորից շատ էի սիրում: Մայրիկս ինձ թվում էր անսխալական և սուրբ:

Մեր ընտանիքը մեծ էր, բաղկացած ութ հոգուց: Հայրս, մայրս, տատս, հորաքույր Ալմոն, ես, Հայկանուշը, Սերիկը և Երանուհին: Այդ մեծ ընտանիքը չէր կարող կերակրել հայրս ո՛չ մեր հողակտորի ժլատ բերքով, ո՛չ մեր ծուռ կովի ժլատ կաթով, ո՛չ էլ ունևոր գյուղացիների մոտ կատարած իր մշակային աշխատանքով: Ուստի հորաքույր Ալմաստը հարկադրված էր ընտանիքին օգնել: Նա հաճախ գնում էր հարևան Արչակը, այնտեղ բուրդ էր գզում, լվացք էր անում, սպիտակ ավել էր ծախում, այդ բոլորի դիմաց հաց էր ստանում, բերում տուն: Հորաքույր Ալմոն իր այդ վաստակով շատ էր թեթևացնում ընտանիքի վիճակը:

— Հորքո՛ւր,— հարցնում էի ես հաճախ,— ինչո՞ւ մեր գյուղում լվացք չես անում, գնում ես, Արչակումն ես լվացք անում:

— Մեր գեղացիներից ամաչում եմ, արևուդ մեռնեմ,— պատասխանում էր հորաքույր Ալմաստը:

Երբեմն ես էլ էի հորաքույր Ալմաստի հետ գնում Արչակ՝ այնտեղ համով բաներ ուտելու և մանավանդ ազնավուրի գերեզմաններում ապրող գյավրեին (գորշուկին) տեսնելու համար: Գյավրեն հորաքույր Ալմոյի հնարած ինչ-որ անորոշ էակ էր: Մա՞րդ էր, թե՞ գազան, չգիտեինք: Միայն ես ու քույրերս կարող էինք ժամերով լսել, թե ինչպես Գյավրեն սիրում էր մեզ, շատ բարև է ուղարկել և խոստանում է ուղարկել նաև սիրուն շորեր ու համով ուտելիքներ, եթե խելոք մնանք:

Արչակցիք իմ հորաքույր Ալմաստին շատ էին հարգում: Երբ նա իմ ձեռքից բռնած անցնում էր գյուղի փողոցներով, կանայք դռների միջից կանչում էին.

— Ալմա՛ստ քույրիկ, ո՞նց է քեֆդ: Չե՞ս գա մեր տուն լհեքի բրդերը լվալու:

Մեր բարբառով բրդե վերմակը կոչվում էր լհեք:

— Քեֆս լավ է,— պատասխանում էր հորաքույրս:— Աստված շեն պահի ձեր տունը: Կգամ, ինչի՞ չեմ գա:

Արչակը Խառակոնիսից ավելի մեծ էր ու սիրուն: Այնտեղ փողոցներում ու բակերում ծառեր կային: Բարձր բարդի ծառեր: Արչակումն էր նստում թուրքական մուդուրը, այսինքն գավառապետը: Դրա համար էլ Արչակցիք մեր գյուղացիների վրա նայում էին վերևից: Եթե խառակոնիսցիներից մեկնու-



## ԾԱՂԻԿՆԵՐԸ

ՎԱՀՐԱՄ ՄԽԱԿՅԱՆ

Առավոտյան հով ու զովին,
Արեգակի պայծառ շողին՝
Վառ ժպտում են ծաղիկները
Ու փթթում են ծաղիկները:

Երեկոյան աղջամուղջին,
Երբ շողերն են հանգչում վերջին,
Սո՜ւս, խոսում են ծաղիկները,
Փսփսում են ծաղիկները...

Երբ իջնում է գիշերն անդորր,
Ծնկշնկում է զեփյուռն օրոր,
Լուռ ննջում են ծաղիկները,
Երազում են ծաղիկները:

Դա իսկույն երևում էր. նա իսկական արքայադուստր էր՝ ճերմակ, նուրբ մաշկով ու բարձր ճակատով, փարթամ մազերով ու գեղեցիկ աչքերով: Միայն թե նա պալատում չէր ապրում, այլ սովորական մի տան մեջ, որը պարտեզ ուներ ու ցանկապատ: Եվ ոչ էլ ծառաներ ու մանկլավիկներ ուներ: Նա ինքն էր հագնվում, սանրվում և ուտում: Ինչպես վարդն է տարբերվում մյուս ծաղիկներից, այնպես էլ արքայադուստրը՝ մյուս աղջիկներից:

Երբ քայլում էր, խոտերը գլուխ էին տալիս նրան, քամին քնքշորեն համբուրում էր ձեռքը, իսկ տերևները թաքուն երապում էին մազերին դիպչել:

Բայց ձանձրանում էր արքայադուստրը և ոչինչ չէր փարատում այդ տաղտուկը. ո՛չ գրքերը, ո՛չ նրան շրջապատող մարդիկ, ո՛չ էլ նույնիսկ հույսը: Իսկ հույսը նրա մեջ այնպես էր,ինչպես նեկտարը ծաղկաբաժակում: Թեպետ տոկուն աղջիկ էր ու շուտ չէր ընկճվում, մի օր էլ կայրացավ: Զայրացավ արքայականի վրա, որը չէր գալիս: Մի առավոտ էլ վերցնելով ճանապարհորդական թիկնոցն ու կամբյուղը, դուրս եկավ: Ճանապարհին

---

մեկի մասին ասում էին՝ նրան տարան Արչակ, նշանակում էր տարան բանտարկելու:

Արչակը նշանավոր էր նաև նրանով, որ նրան մոտիկ սարի լանջին էր գտնվում Սուրբ Սարգսի վանքը, շրջակա գյուղերի ուխտատեղին: Ուխտ գնալը շատ մեծ ուրախություն էր մեր գյուղերի կյանքում: Ամեն ուխտագնացության ժամանակ Գուրաքույր Ալմոն ձեռքիցս բռնած ինձ տանում էր Սուրբ Սարգիս: Ինձ համար մեծ հաճույք էր նայել, ինչպես արչակցիք, խառակոնիսցիք, սևանցիք, լմեցիք, ավերակցիք, կղլջեցիք սայլերով ու ձիերով բարձրանում են ուխտատեղի: Սուրբ Սարգսի վանքի շրջակայքում, ծառերի տակ ու բացատների վրա գառ ու ոչխար էին մորթում, մատաղ էին եփում, շուրջպար էին բռնում, իրար հրավիրում էին մատաղ ուտելու: Այն օրերի մատաղից ավելի համեղ բան ես իմ կյանքում երբեք չեմ կերել:

Ուխտագնացության բոլոր այդ աղմուկների միջից իմ ականջին այսօր էլ դեռ հնչում է արչակցի Խաժոյենց Վարդանի հայհոյանքը, որ ուղղված էր իր կնոջը, որովհետև նրա կինը գովանդի (շուրջպարի) մեջ կորցրել էր իր թանկագին ապարանջանը:

— Բա դա ասե՞ղ էր, որ կորցրիր:

Ես ու հորաքույր Ալմաստը երկար փնտրում էինք այդ ապարանջանը: Գտանք և հանձնեցինք տիրուհուն: Փոխարենը շահեցինք շատ բարի անուն և մի խուրջին լիքը զանազան համեղ ուտելիքներ, որ մենք Խաչոյի սայլին դրած բերինք Խառակոնիս և մեր տանեցիներին կուշտ հյուրասիրեցինք:




# Արքայադուստրը

(ՀԵՔԻԱԹ)

ԱՆԱՀԻՏ ՊԱՐՍԱՄՅԱՆ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

մի ծերունի հանդիպեց: Ծերունիները բնության պես իմաստուն են, դրա համար այս ծերունին էլ իսկույն գլխի ընկավ, որ եկողը արքայադուստր է, թեև նա ծածկված էր գորշ թիկնոցով:

— Բարի օր, պապի՛կ,— ասաց արքայադուստրը:

— Բարի օր, գեղեցի՛կ արքայադուստր,— պատասխանեց ծերունին:

— Ո՞ւր է տանում այս ճանապարհը,- հարցրեց աղջիկը:

— Աշխարհ,— պատասխանեց ծերունին: Արքայադուստրը շնորհակալություն հայտնեց ու քայլեց:

## Թագավորը, որի քարկտիկի հավաքածուն աշխարհում ամենա...

Արքայադուստրը հոգնած էր և ուզում էր քնել փափուկ խոտի մեջ, բայց թաքուն մի հույս ստիպում էր նրան ժամ առաջ մտնել քաղաք:

«Թերևս այստեղ գտնեմ նրան»,— մտածում էր նա, թեև կայրացած էր արքայակնի վրա:

Դարբասի մոտ կանգնած պինվորները իսկույն ներս թողեցին նրան. նախ այն պատճառով, որ դեռ այնպիսի գեղեցիկ աղջիկ չէին տեսել, և հետո, նա այնքան մեղմ էր խոսում ու ժպտում:

Թագավորի պալատը մեծ էր ու գեղեցիկ, կանաչ այգու մեջ: Աստիճանների վրա պալատականի շքեղ հագուստով երկու մարդ բարկտիկ էին խաղում:

Արքայադստերը տեսնելով, նրանցից մեկը՝ ավելի ջահելն ու սիրունը, հիացմունքից ծափ վարկեց.

— Ի՜նչ գեղեցիկ ես,— դիմեց նա աղջկան,— ո՞վ ես դու:

Արքայադուստրը լռում էր, հետո ասաց.

— Հյուր: Իսկ դուք ո՞վ եք:

— Բայց նա թագավորն է,— պատասխանեց մյուսը: Հետո դեմքին ավելի լուրջ արտահայտություն տալով.— Պատիվ ունեք խոսելու առաջին մինիստրի հետ:

— Ես ուզում էի քաղաքը տեսնել,— ասաց աղջիկը:

Թագավորը, չգիտես ինչու նորից ծափ վարկելով պատասխանեց.

— Դուք իմ պալատը տեսեք, չէ՞ որ այսուհետև թագուհի եք լինելու, իսկ քաղաքը տխուր է ու անհետաքրքիր:

— Ի՞նչ թագուհի,,— հարցրեց կարմացած արքայադուստրը:

Նորից մեջ ընկավ առաջին մինիստրը:

— Պատիվ ունեք խոսելու առաջին մինիստրի հետ,— կրկնեց նա,— արքան ձեզ ընտրեց թագուհի: Արդեն հինգ տարի է, ինչ ողջ պալատն աղերսում է նրան թագուհի ընտրել: Ընտրությունը կատարված է: Թույլ տվեք համբուրել թագուհու քղանցքը:

Անակնկալի եկած արքայադուստրը հազիվ կարողացավ բացատրել, որ թագուհի դառնալու ցանկություն չունի: Հիմա արդեն ուզում էր հնարավորին չափ արագ հեռանալ այդտեղից:

— Ի՞նչչ,— միաժամանակ բացականչեցին թագավորն ու առաջին մինիստրը:— Դ.դ.դ... դուք մերժո՞ւմ եք:

— Արդեն ասացի,— կրկնեց աղջիկը:

— Ես քեզ կտամ իմ քարկտիկի հավաքածուն, որը լավագույնն է աշխարհում, ամենաթանկարժեքը,— ասաց թագավորը:

— Պատիվ ունեք խոսելու առաջին մինիստրի հետ,— սկսեց մինիստրը,— այս քարերն աշխարհում ամենալավն են, նրանք ադա-մա՜նդ են,— ու հաղթական նայեց թագավորին:

— Մնաք բարով,— հրաժեշտ տվեց արքայադուստրը:

## Քաջ թագուհին և նրա յոթ նաժիշտները, որոնք...

Երբ արքայադուստրը մտավ հեռակայալ անծանոթ քաղաքը, այնտեղ տոնախմբություն էր: Ծնծղաներով, թմբուկներով ու շեփորներով մարդիկ փողոց էին դուրս եկել: Քաջ թագուհին ու նրա նույնքան քաջ յոթ նաժիշտները բռնել էին չգիտես ինչպես պալատ ընկած մկանը: Յոթ նաժիշտները պարգևատրվել էին հատուկ մեդալներով: Թողարկվել էր այդ օրը խորհրդանշող հատուկ դրոշմանիշ: Քաղաքի հրապարակում քսանհինգ քանդակագործներ մկանը բռնելու տեսարանի տարբեր պահերն էին քան-



*դակում: Թագուհին տասներկու գրագիրների հետ միասին գրի էր առնում իր հուշերը: Արքայադուստրը, ինչպես եկել էր, այնպես էլ խաղաղ հեռացավ այստեղից:*

### Բաց դռների քաղաքը, ուր բոլորը միատեսակ էին ապրում...

*Այս քաղաքը դուռ ու դարբաս չուներ: Դռներ ընդհանրապես չկային: Տներում դռների փոխարեն միայն բացվածք էր: Արքայադուստրը մեկին հարցրեց, թե ինչու է այդպես:*

*— Մենք թաքցնելու բան չունենք,— պատասխանեց մարդը:*

*Արքայադուստրը քայլում էր դռներ չունեցող քաղաքի փողոցներով ու ձանձրանում: Բոլոր մարդիկ ուտում, խմում, աշխատում էին նույն ժամին ու իրար նման: Երբ մի տան մոտով անցնելիս տեսնում էիր, որ տանտիրուհին ձեռագործ է անում, կարող էիր հաստատ համոզված լինել, որ ողջ քաղաքի կանայք ու աղջիկները նույնն են անում: Այդ քաղաքում բոլորը օրինավոր քաղաքացիներ էին, միշտ կուշտ ու գոհ և շարունակական հրճվանքի մեջ:*

*Նրանք ունենում էին իրենց ամենօրյա ժողովները, որը վարում էր քաղաքի ներքին գործերի մինիստրը: Դրանցից մեկին ներկա գտնվեց և արքայադուստրը:*

*Քաղաքի հրապարակում բեմ կար: Նվագախմբի հնչյունների տակ (միշտ նույն եղանակի) բեմ է բարձրանում պեկուցողը:*

*Երբ երաժշտությունը վերջացավ, ծափերը լռեցին, մինիստրը հազաց:*

*— Յուրաքանչյուր կաթսա, թող ձեզ հայտնի լինի, նրա համար է, որ նրա մեջ ճաշ եփեն,— պատկառազդու ձայնով սկսեց նա:*

*— Եվ եթե որևէ մեկը, մի կին, ով էլ որ լինի նա,— այստեղ նա ոլորեց աչքերը,— և եթե մի կին փորձում է կաթսայի մեջ լոբի աճեցնել կամ կրկնակոշիկները պահել, այդպիսի կնոջը ես չէի ների, ով էլ որ նա լիներ, ո՛չ, ո՛չ, չէ՛ի ների:*

*«Իմ տեսած բոլոր քաղաքներից ամենապզվելին է սա»,— մտածեց արքայադուստրը և արագ հեռացավ:*

*Գնում էր արքայադուստրը: Հոգնել էր: Էլ հույս չուներ, թե կգտներ արքայազնին: Նստեց, գլուխը ծնկներին հակեց ու լաց եղավ: Արցունքները գլորվում էին ճերմակ այտերով, կաթում գետնին: Եվ կաթած տեղից անմոռուկներ էին բարձրանում հողից, կապույտ ու նուրբ, քնքուշ ցողունով:*

*Գուցե նա ընդհանրապես չի եկել, պիտի գա իրենից հետո, կամ գուցե նա... չկա:*

*Գորշ թիկնոցի մեջ փաթաթված՝ նա շարունակեց քայլել:*

*Քայլում էր եկած ճամփով: Նա արագ անցավ դռներ չունեցող, և քաջ թագուհու քաղաքների մոտով, էլի քայլեց, քայլեց և հասավ այնտեղ, որտեղի թագավորի քարկտիկի հավաքածուն լավագույնն էր աշխարհում: Արքայադուստրը կարծում էր, թե նորից արժանապատիվ առաջին մինիստրին և ուրախ արքային կգտնի խաղալիս: Բայց գուցե արքան բոլորովին էլ ուրախ չէր, այլ ուրախանում էր չտխրելո՜ւ համար: Արքայադուստրը տեսավ նրան. ինչքա՜ն փոխվել էր: Քարկրտիկի ադամանդյա հավաքածուն փռված էր նրա առաջ, այն ժամանակվա պես: Արքան նստել էր պալատի աստիճաններին, բայց հայացքը անթարթ հառել էր մի կետի, ինչ-որ տեղ հեռուներում: Նա այնքան տխուր էր ու ցրված, որ չնկատեց արքայադստերը, մինչև որ նա չմոտեցավ: Միայն այն ժամանակ, երբ արքայադուստրը մոտ էր նրան, շատ մոտ, ուղղակի ձեռքը բռնելու չափ, արքան ասաց. «Հեռացի՛ր, տեսի՛լք»:*



*Բայց երբ բռնեց աղջկա փոքրիկ, սպիտակ ձեռքը, լաց եղավ: «Մի՞թե իրական ես,—ասում էր,— մի՞թե գտա քեզ, եկա՞ր»:*

*Արքայադուստրը նայում էր նրան: Չէ՞ որ ինքն էլ փնտրել էր ու չէր գտել: Զգում էր, թե որքան վիշտ է պատճառել արքային: Երբ արդեն ծերացած առաջին մինիստրը եկավ թագուհու քղանցքը համբուրելու, արքայադուստրը հանեց մազերը կարդարող սպիտակ շուշանն ու նվիրեց արքային:*

*Հրճվանքից առաջին մինիստրը երեխայի պես ուրախանում էր. «Ձեր գնալուց ի վեր, թագուհիս, մենք քարկտիկ չենք խաղացել»:*

*Ապրում էին խաղաղ: Առաջին մինիստրն ու արքան նորից խաղում էին: Թագուհին երբեմն նայում էր, մեկ-մեկ էլ՝ նրանց հաճույք պատճառելու համար, ինքն էլ խաղում: Բայց թեժ խաղերի ժամանակ, երբ նրանք խիստ տարված էին լինում, նա գնում էր այգի. նստում թմբի վրա, հողին մոտիկ: Ու լալիս էր: Արցունքները գլորվում էին ճերմակ այտերով, կաթում գետնին: Եվ կաթած տեղերից անմոռուկներ էին բարձրանում հողից, քնքուշ ցողունով, կապույտ ու նուրբ:*

# ԱՆՈՒՆԸ ՄԱՐԴՆ ԻՆՔՆ Է...

*ԱԼ. ԳՈՐԲՈՎՍԿԻ*

1790 թվականի աշնան մի առավոտ Պետերբուրգի վարչատունը լցվեց ճիչ-աղաղակով: Մտրակահարում էին ատենադպիր Սեմյոն Սորոկինին:

Օրենքի համաձայն, դահճին չհոգնեցնելու համար, այդ բանը արվում էր դանդաղ: Մեկ ժամում՝ 30—40 հարված: Ամեն անգամ արնաթաթախ, ծանր մտրակը թափահարելիս, դահիճը ուրախ գոչում էր.

— Տես հա՛, կդաղեմ:

Ի՞նչ հանցանքի մեջ էր մեղադրվում ատենադպիր Սեմյոն Սորոկինը:

Մի քանի օր առաջ, սենատի վեկուցագիրն արտագրելիս, նա տառասխալ էր բաց թողել: «Հիշարժան, երանելի Պյոտր I-ը» նախադասության մեջ տառերը ետ ու առաջ էր դրել և գրել «Պյորտ I»:

Իսկույն էր երդվում. թե դա ընդամենը սխալմունք է:

Սենատը վճիռ էր արձակել հանդուգն ատենադպրին մտրակահարել:

19-րդ դար: Դարձյալ Ռուսաստան: Անունների հսկողության համար ռուսական միապետության արթուն աչքն էին գրաքննիչները: Նրանք ամենայն աչալրջությամբ համեմատում են գեղարվեստական գործերի հերոսների անուններն ու ազգանունները թագավորական տան և ազնվականների անունների հետ: Աստված չաներ, եթե գրական որևէ հերոսի ազգանունը կամ անունը վիրավորական լիներ ազդեցիկ մի դեմքի համար:

Սակայն գրաքննության գլխավոր վարչության շրջահայացությունն ավելի հեռուն էր գնում: Ի՞նչ կպատահի, ասենք, եթե ամեն մեկը խելքին փչած անունը տա իր ձիուն: Մեկ էլ տեսար հայտնվեց «Նիկոլայ» անունով ջրկիր մի ձի: Դրանով կարող է անարգվել թագավորական վսեմ անունը:

— Ախ դո՛ւ, Նիկո՛լա: Ախ դո՛ւ, նկոլյա՛լ,—կարող էր բացեիբաց, մարդկանց ներկայությամբ գոռալ ձիապանը:

Հենց միայն այդ մտքից գրաքննչական չինովնիկների հավատարմությամբ ու եռանդով լի սրտերը պայթում էին: Եվ ահա դրան հետևում է գրաքննության գլխավոր վարչության որոշումը. Ռուսաստանում խստագույնս արգելվում է ձիերին քրիստոնեական անուններ տալ:

Անվանը վիրավորանք հասցնելու մեղադրանքով մի անգամ դատարանի առաջ է կանգնում Էմիլ Զոլան: Գրողը մեղադրվում էր ոմն իրավաբան Դյուվերդիի վիրավորանք հասցնելու մեջ: Պարզվում է,

որ Զոլայի վեպերից մեկում կա մի հերոս՝ Փարիզի բողոքարկման դատարանի խորհրդատու, նույնպես Դյուվերդի անունով: Ըստ որում գրական հերոս Դյուվերդին օժտված է մի շարք արատներով, որ երբեք իր վրա չէր ուզում առնել այդ անվան իրական կրողը: Իզուր էր գրողը հավատացնում, թե ինքը այդ իրավաբանին նկատի չի ունեցել: Առաջինի Դյուվերդին անդրդվելի էր:



Վեպի հետագա հրատարակություններում Զոլան ստիպված էր փոխել հերոսի անունը:

Ինչի՞ց էր նեղացել փարիզյան դատարանի իրավաբանը:

«Անվան պատիվ» հասկացողությունը դարձյալ առաջացել է մարդու անվան և նրա անձնավորության անքակտելի կապի պատկերացման հետ:

Մարդը վատ արարք է թույլ տվել. դա արատավորում է նրա անունը: Եվ ընդհակառակը: Վարկաբեկված է անունը (միայն անունը) և դա ստվեր է գցում յրեն՝ մարդու վրա:

Նորվեգիայում բավական լայն տարածում ունի Կվիսլինգ ազգանունը: Երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ այդ ազգանունը կրող մի մարդ գլխավորում էր ֆաշիստներին հարող մարիոնետային կառավարությունը և դավաճանել էր իր ժողովրդին: «Կվիսլինգ» բառը դարձել էր հասարակ անուն:

Արատավորված անունը արատավորել էր այդ անունը կրողներին: Դավաճանի հետ նույն ազգանունը կրող բոլորովին անմեղ մարդիկ շտապում են փոխել իրենց ազգանունը:

Մարդիկ տարբեր ձևով են հասկանում անմահությունը: Ոմանք դա կապում են գաղափարի, սխրագործության հետ, որը կշարունակի ապրել և նրանց մահից հետո: Մյուսները անձնական անմահությունը տեսնում են նրա մեջ, որ մահից հետո պահպանվի հիշողություն իրենց մասին և իրենց անունը հանձնվի սերունդներին:

Անունն անմահացնելու ձգտումը եղել է շատերի փառասիրական իղձը: Անցյալը առատ է նման օրինակներով:

Եփեսոս քաղաքը հին Հունաստանում հայտնի էր Դիանա դիցուհու հոյակավոր տաճարով: Մի գիշեր Եփեսոսի բնակիչները արթնացան տագնապահար: Ամբողջ քաղաքը լուսավորված էր պայծառ լույսով: Դիանայի տաճարը այրվում էր հսկայական խարույկի նման: Հրձիգը բռնվեց: Նրա՝ Հերոստրատի մըտքով չէր էլ անցնում ժխտել իր մեղքը: Հանցագործությունը հրեշավոր էր և կարծես անհասկանալի: Նրան տանջահար արին:

Այդ ժամանակ նա խոստովանեց, որ սքանչելի տաճարն այրել է միայն նրա համար, որ սերունդները հիշեն իր անունը:

Եփեսոսի բնակիչները գտան, որ հանցագործի համար քիչ է սովորական պատիժը: Որոշում են Հերոստրատին պատժել նրա անունը մոռացության մատնելով: Քաղաքում արգելվում է արտասանել այդ մարդու անունը: Եվ եթե հույն պատմաբան Թեոպոմպոսը չխախտեր լռությունը, չպատմեր այդ դեպքի մասին, աշխարհում ոչ ոք հիմա չէր իմանա Հերոստրատի անունը:



Այն, որ յուրաքանչյուր անձնավորության ինքնասիրությունը խորապես կապված է նրա անվան հետ, հայտնի էր «մարդկային հոգու վարպետներից» շատերին: Օրինակ, Նապոլեոնը իր գվարդիայի շատ զինվորներին ոչ միայն դեմքով էր հիշում, այլև ճանաչում էր անուններով: Նրանցից յուրաքանչյուրը այդ զինվորական հսկայական մեխանիզմի անդեմ մասնիկը չէր, այլ մարդ՝ Պիեռ կամ Ժակ: Եվ իրենց անվանն ու մարդկային արժանապատվությանը տըրվող այդ հարգանքին նրանք սիրով ու հավատարմությամբ էին հատուցում կայսրին: Հատուցում էին այն միակ արժեքով, որ շրջանառության մեջ էր պատերազմում՝ իրենց կյանքով:

Մարդը ինքն անունն է: Եթե հարգում եք մարդուն, դուք երբեք չեք մոռանա նրա անունը և սխալ չեք արտասանի այդ անունը: Անուշադրությունը անվան հանդեպ՝ անուշադրություն է մարդու հանդեպ: Արդյոք միշտ պահո՞ւմ եք ձեր մտքում այն մարդու անունը, ում հետ ծանոթացնում են ձեզ:

Ա. Պ. Չեխովը հիշում է, թե ինչպես մի անգամ Պետերբուրգում Պոլոնսկու տուն են հրավիրում իրեն: Չեխովին հայտնել էին, թե Պոլոնսկին շատ է ուզում ծանոթանալ իր հետ:

Ինչպես հայտնի է, Չեխովը չուներ այն մեծամիտ խոսելաձևը, որ կապվում է «մոդայիկ գրող» հասկացողության հետ: Այդ պատճառով էլ, երբ նա մտնում է այդ տունը, պենսնե կրող այդ ամաչկոտ մարդու վրա գրեթե ուշադրություն չեն դարձնում: Ոչ ոք իրեն նեղություն չի տալիս նույնիսկ լսել նրա ազգանունը: Ամբողջ երեկոն Անտոն Պավլովիչը նստում է անկյունում, կարմանալով, թե ինչու են իրեն հրավիրել:

«Վերջապես սկսեցին հրաժեշտ տալ,— գրում է նա հետագայում,— Պոլոնսկին անհարմարության կգացումից կամեցավ ինչ-որ սիրալիր բան ասել ինձ:

«Համենայն դեպս ինձ մի՛ մոռացեք,— ասում է նա,— այցելեցեք երբեմն, կարծեմ մենք առաջ էլ հանդիպել ենք, ձեր ազգանունը Չիժիկով է, այնպես չէ՞»:—«Ոչ, Չեխով է»·— ասացի ես: «Տե՜ր աստված, ինչո՞ւ առաջ չէիք ասում,— բացականչեց տան տերը և ձեռքերն իրար զարկեց:— Շատ ծիծաղելի պատմություն ստացվեց»:



«Շատ ծիծաղելի պատմություն ստացվեց»,— անհարմարության զգացումով ամփոփում է Չեխովը: Անուշադրությունը մարդու հանդեպ արտահայտվել է անուշադրությամբ նրա անվան հանդեպ:

Զարմանալի չէ, որ հազիվ թե գտնվի մի մարդ, որին չվիրավորի նման անուշադրությունը:

Միջին Ռուսաստան: Ճանապարհով գլորվում է սայլը: Այնտեղ նստած է մի երիտասարդ: Վերեսաևն է, նոր լույս տեսած և աղմուկ հանած «Բժշկի հիշատակարան»-ի հեղինակը: Վերեսաևը գնում է Յասնայա Պոլյանա՝ Լև Տոլստոյի մոտ: Նա մտահոգ է, հուզված: Ինչպե՞ս կդիմավորի իրեն Տոլստոյը:

Կամենալով ուշադրություն ցուցաբերել մարդու հանդեպ, Տոլստոյը չի դժվարանում նախօրոք իմանալ և մտքում պահել նրա անունը: Վերեսաևը չի մոռացել այդ դեպքը և մտաբերել է շատ տարիներ անց:

Մարդկանց հանդեպ ուշադիր լինելը պետք է օրենք լինի: Այդ օրենքով ամբողջ կյանքում առաջնորդվել է Վլադիմիր Իլյիչ Լենինը:

1917 թվական: Պատմության նժարին է դրված Ռուսաստանի բախտն ու պրոլետարական հեղափոխության ապագան: Լենինն ստիպված է թաքնվել: Բոլորից աննկատ, գրիմով դեմքը փոխած, նա վագոնից դուրս է գալիս Ռազլիվ կայարանը: Այստեղ նրան դիմավորում է փորձված և ստուգված կուսակցական աշխատող Ն. Ա. Եմելյանովը: Կայարանից մինչև այն տունը, ուր պետք է թաքնվի հեղափոխության առաջնորդը, հինգ րոպեի ճանապարհ է: Այդ կարճ ժամանակում պետք է հասցնել ասել ամենակարևորը, ամենից անհրաժեշտը: Ինչի՞ մասին է խոսում Լենինը, ի՞նչ է հարցնում: Պարզվում է, որ Լենինը նախ և առաջ հետաքրքրվում է, թե ինչպես է տանտիրուհու՝ Եմելյանովի կնոջ անուն-հայրանունը: Տուն գալով և բարևելով նրան, Լենինը խոսում է նրա հետ, դիմելով նրան անուն-հայրանունով:

Այսպիսին էր մարդկանց հետ վարվելու լենինյան եղանակը: Մարդու հանդեպ ունեցած հարգանքը նա արտահայտում էր նրա անվան հանդեպ ունեցած հարգանքով:

1921 թվականի ապրիլին Ժողկոմխորհի նախագահի մոտ է գալիս ուկրաինական գյուղացիների պատգամավորությունը: «Աթոռները դասավորելով,— հիշում է Լենինի մոտ եղած ընկերներից մեկը,— Վլադիմիր Իլյիչը մեզ առաջարկեց նստել և ինքն էլ նստեց մեզ հետ միասին: Հերթով սկսեց հարցնել անուն, հայրանուն, ազգանուն, որտեղից է, որ գավառից: Մենք բոլորս մի տեսակ ազատ ու անկաշկանդ զգացինք նրա հետ: Վլադիմիր Իլյիչը բացառիկ հիշողություն ուներ: Մենք նույնիսկ զարմացանք, երբ նա զրույցի ընթացքում յուրաքանչյուրին սկսեց դիմել անուն-հայրանունով»:



Մեր կյանքի ընթացքում շատ մարդկանց ենք հանդիպում մենք: Ինչո՞ւ հազվադեպ ենք նեղություն տալիս մեզ հետաքրքրվել, թե ինչ է նրա անունը և հիշել այդ անունը:

Մի անգամ այսպիսի մի դարձվածք լսեցի. «Նա քաջ է, բայց քաջ է հոգու խորքում»: Բայց եթե քաջությունն այդքան խոր է թաքնված, ի՞նչ նշանակություն ունի՝ կա՞ այդ քաջությունը, թե՞ ոչ: Նույնը կարելի է ասել նաև մարդկանց հանդեպ ունեցած հարգանքի մասին: Մարդը արժանի է հարգանքի: Բայց հարգանքը պասսիվ վիճակ չէ: Դա մի հատկություն է, որ կարիք ունի արտահայտման: Երբեմն դա այնքան էլ դժվար չէ: Երբեմն դրա համար բավական է իմանալ միայն նրա անունը:

Քանի որ անունն ինքը մարդն է:

## ԱՊՐԻԼՅԱՆ ԱՆՁՐԵՎ

*ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ՀՈՎՆԱԹԱՆ*

Ձմեռն անցել է ու ձյունն անցել է,
Հիմա ապրիլ է, գարնան անձրև է:
Հիմա ուրիշ են երկինքն ու հողը,
Բայց ո՞վ է, ո՞վ է այսպես լացողը.
Այս կաթիլները գարնան ամպից են,
Այնպես արդար են, այնպես անբիծ են,
Այս կաթիլները մեր աշխարհի՛նն են,
Մեր սարերի՛նն են, մեր քարերի՛նն են:
Այս կաթիլները հողի գանձերն են,
Կարոտի պես է գալիս անձրևը:
Հողին օրհնանք է ցանում երկինքը,
Որ առատ լինեն բերքն ու բարիքը:
Ամպը տալիս է իր բարի ցողը,
Որ ջահելանա հայրենի հողը...

# ԴՐՈՒԺԻՆԱՆԵՐՈՒՄ



# ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ

## «ԳԼՈԲՈՒՍԻ» ՀԵՏՔԵՐՈՎ.

Լուսամփոփի լույսը վաղուց էր վառվում: Անահիտը դեռ գրում էր: Սեղանին կապտերիզ ծրարներ կային: Մի ամբողջ կույտ: Եվ ինչպիսի՜ դրոշմանիշեր: Քանի՞սն են: Եգիպտոսից, Հունգարիայից, Սիրիայից, Վլադիվոստոկից ու Լեռնային Ղարաբաղից: Զարմանալի են այս փոքրիկ, նախշերիզ ծրարները: Կտրում են կիլոմետրեր, ծովեր ու լեռներ, գալիս են, գնում և փոթորկում են մարդու, ուրախացնում ու հարստացնում:

Հերթական նամակը, որին պատասխանում էր Անահիտը, Եգիպտոսից էր: Կահիրեից: Սրբուհի Երոյան: Նա գրում էր. «Իմ անուշ հայրենակիցներ: Դուք ինձ չեք ճանաչում , իսկ ես ձեզ գիտեմ: «Պիոներ կանչ»-ում կարդացի ձեր Հրաչյա Աճառյանի անվան դպրոցի պիոներների, ձեր «Գլոբուս» ակումբի մասին: Շատ հուզվեցի: Ինձ էլ գրեք: Մենք իրար պատմելու շատ բան ունենք»:

«Թանկագին Սրբուհի,— պատասխանում է Անահիտը,— ստացա նամակդ: Բարևներ Երևանից, մեր 72 դպրոցի «Գլոբուս» ինտերնացիոնալ ակումբից:

Մեր ակումբը գործում է 1961 թվից: «Գլոբուս»-ի ընտանիքում շատ նոր անուններ են գրանցվել: Նախկին գլոբուսականներից շատերը, դպրոցն ավարտելով, գնացել են իրենց երազների հետքերով: Ճամփորդելով Սովետական Միության և արտասահմանի այլևայլ վայրեր, նրանցից ոմանք անձամբ հանդիպել են նամակների միջոցով գտած իրենց բարեկամներին:

Մեր նշանաբանն է՝ «Տուր ձեռքդ, բարեկամ»:

Եթե ուզենանք գրել «Գլոբուսի» կենսագրությունը, ապա մեզ շատ կօգնի Լյովա Ստեփանյանի պատրաստած աշխարհի քարտեզը: Այս քարտեզի վրա լուսային էֆեկտները ցույց են տալիս, թե որտեղ, որ աշխարհամասերի որ քաղաքներում ու գյուղերում են գտնվում մեր բարեկամները: Իսկ լույսեր, փարոսներ շատ կան քարտեզի վրա: Այն սկզվում է մեր պիոներական սենյակից ու ձգվում հեռո՜ւ, հեռո՜ւ»:

Նամակներից մեկում, բուլղարացի Զլատա անունով մի աղջիկ գրում է. «Ես շատ եմ ցանկանում իմանալ Հայաստանի մասին, նրա ներկան ու անցյալը, ձեր անվանի գրողների, ճարտարապետական կոթողների, նկարիչների մասին»:

Բարեկամությունը օգնում է առաջին հերթին հենց իրենց՝ «Գլոբուսի» սաներին, որպեսզի նախ և առաջ նրանք իրենք սովորեն ու շատ բան իմանան Հայաստանի մասին: Կարդում են նոր գրքեր, նոր նկարներ դիտում, էքսկուրսիաներ կազմակերպում:

Նամակներից մեկն էլ Սովետական Միության հյուսիսային սահմանից էր: Գրել էր հայ զինվոր Սաշա Էլլաթյանը: «Ձեր մասին, սիրելի աճառյանականներ, կարդացի մեր «Ավանգարդ»-ում: Պատմեցի ձեր լավ գործերի մասին մեր ռուս, վրացի, ուկրաինացի, լատիշ զինվորներին: Եվ նրանց անունից եմ գրում: Հիմա Հայաստանում տաք օրեր են, գիտեմ: Իսկ մեզ մոտ սառույցներ են դեռ: Փոթորիկ է: Փչում է քամին, ծովը ճերմա՜կ, ճերմակ է: Բևեռ է:

Նույն թերթում կարդացի, որ Երևանի «Հեքիաթ» սրճարանում դուք լավ հանդիպում եք կազմակերպել տարբեր ազգերի երեխաների, Երևանում սովորող ուսանողների հետ: Սուրճ եք խմել, նվագել, ուրախացել: Դա ինձ հուզեց, որոշեցի ես էլ այստեղ՝ բևեռում կազմակերպեմ ինտերնացիոնալ երեկո: Ես կհյուրասիրեմ մերոնց սուրճով, մեր երգերով ու պարերով: Իսկ դուք ինձ մի քիչ Երևանի հող ու ծաղիկների սերմեր ուղարկեք: Եվ հետո, եկեք պայմանավորվենք. բարեկամներ լինենք, դուք լավ սովորեք, մենք լավ ծառայենք»:

Նամակնե՜ր, նամակնե՜ր: Դրոշմանիշե՜ր: Ամեն օր, ամեն շաբաթ փոստատարը՝ լինի մեծ դասամիջոցին, հավաքույթի ժամանակ թե դասերից հետո, «Գլոբուս» ակումբի ցանկալի հյուրն է: Բերում է նորանոր նամակներ, նոր հասցեներ. Կապան ու Կրասնոդար, Տաշքենդ ու Չինչին գյուղ (Շամշադին), Վարշավա և Ուլյանովսկ, Ռյազան, Բրեստ: Թռչում են կապտերիզ ծրարներ այնտեղից այստեղ, այստեղից՝ այնտեղ:

Վերջին նամակը գրեց Անահիտը: Սվերդլովսկի № 11 գիշերօթիկ դպրոց: Զայային: «Մենք Մարտի ութին կրկին այցելեցինք հայ մեծ գիտնական Հրաչյա Աճառյանի այրուն: Լեզվաբանի այրին և դուստրը նոր շատ բան պատմեցին մեզ անվանի լեզվաբանի մասին: Աճառյանն իմացել է տասնյակ լեզուներ: Նրա աշխատասիրությունը սահման չի ունեցել: Նա վիթխարի ժառանգություն է թողել մեզ: Նա իր գործունեությամբ նպաստել է աշխարհի ժողովուրդների իրար մերձենալու, փոխադարձ բարեկամական կապերը սերտ դարձնելու գործին:

Դու խնդրել էիր ինձանից հայերեն գրքեր՝ Լենինի մասին, ուղարկում եմ: Գրիր ձեր քաղաքի ամռան մասին... Անահիտ»:

Լուսամփոփի լույսը մարեց: Ծրարները մնացին սեղանին: Իսկ վաղը դրանք իր և մյուս հասակակիցների նամակների հետ կկտրեն կիլոմետրեր, լեռներ ու ծովեր: Կգնան, որ կամրջեն հեռուները, սրտերը, մտքերը:

ՌՈԲԵՐՏ ԴՈՎԼԱԹՅԱՆ

# ՎԱՐԱԶ

**ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ**

Մեր երկրի կճղակավոր վայրի կենդանիների մեջ վարազը դեռ շատ հինում համարվում էր ամենապատվավոր որսի կենդանին: Մեր որսասեր նախնիք սիրով զբաղվում էին այդ կենդանու որսով մանավանդ այն պատճառով, որ վտանգավոր ու դժվարին էր այն ժամանակվա հասարակ զենքերով վարազի նման ահռելի գազանի դեմ դուրս գալը: Այդ վտանգների մեջ խաղաղ ժամանակ մարդիկ կոփվում էին, որպեսզի կռվի ժամանակ ուժ ու իմաստություն ունենան իրենց հայրենիքը պաշտպանելու: Վարազի որսը մարդուն դարձընում է ճարպիկ, խիզախ, աչալուրջ, ուստի և հայ նախարարներն իրենց որդիներին կոփում էին հատկապես վարազի որսորդությամբ: Հինգերորդ դարի պատմիչ Ղազար Փարպեցին գրում է, որ «նախարարների գունդը ազատների որդիների հետ որսի էր ելնում Արաքսի հովիտը, ուր ոմանք դուրս էին գալիս «սուսերով հաղթանդամ վարազների երամակների դեմ, ինչպես մարտիկների դեմ (կռվելով) թավալգլոր գցում ու սպանում»: Խորենացին գրում է, երբ պարսից Շապուհ թագավորը Հայաստան հյուր եկավ, հայ իշխանները նրան որպես հատուկ պատիվ, վարազի որսի տարան Արաքսի եղեգնուտները: Վարազի որսով զբաղվել են բոլոր հայ թագավորները: Ըստ Խորենացու, Տիգրան Մեծի որդի Արտավազդ թագավորը թափառում էր «ճախճախուտ տեղերում» և որսում էր այդ կենդանիներին, որոնց այն ժամանակ կինճ էին ասում: Արտաշեսի որդի Արտավազդը Մասիսի ստորոտում կինճեր որսալիս ընկնում է մի խորխորատ:

Այդպես շատ էր մեծարվում վարազը և նրա որսը, ուստի հին Հայաստանում որսի աստվածությունը ներկայացված էր թևավոր վարազի կերպարանքով:

Շատ վարազ կար Արաքսի հովտում ոչ միայն Խորենացու ժամանակ, այլև նույնիսկ սրանից 30—40 տարի առաջ: Րաֆֆու Խենթի որդին՝ Վասակ Պողոսյանը, որ Հայաստանի ֆինանսների ժողովրդական կոմիսարն էր, 1926 թվականի աշնանը մեկ որսի տարավ ներկայիս Մասիսի շրջանը: Այն ժամանակ Հրազդանի ստորին հոսանքի հովիտը մինչև Արաքս ծածկըված էր անանցանելի ճահիճներով ու եղեգնուտներով, ուր թափառում էին հարյուրավոր վայրի խոզեր: Խուճապահարները մտան եղեգնուտ, աղմուկ բարձրացրին և բոլուկներով խոզեր հանեցին, որոնցից կարծեմ 13-ը կոհ գնացին դարան մտած որսորդների դիպուկ կրակոցներին: Մինչև հիմնական թվականները խոզեր կային նաև Մեծամորի եղեգնուտներում, Ռեհանլվի ճահիճներում, Արազդայանի ջամբուտներում:

Վերացան եղեգնուտները, ճահճուտները վերածվեցին վարելահողերի, վերացան նաև վարազները: Այժմ Արարատյան դաշտում վարազներ հանդիպում են միայն Արաքսի ափերին, այն էլ Թուրքիայից այս կողմ անցնողներն են: Քիչ քանակությամբ խոզ կա նաև Խոսրովի որսարգելանոցում, ինչպես նաև Ազիզբեկովի, Սիսիանի, Մեղրու և Ղափանի անտառներում: Այդ արժեքավոր կենդանին այժմ պահպանվում և բազմացվում է պետության կողմից: Վերջերս կառավարությունը խոզեր է ներմուծել և բաց թողել Ծաղկունյաց լեռներում ու Հաղարծնի (Դիլիջան) անտառում:

Ի՞նչ տեսք ունի վարազը:

Ցածրիկ է, կողերից սեղմված և դունչը սուր: Մարմնի այդպիսի կառուցվածքը նրան հարկավոր է խիտ մացառուտներն ու եղեգնուտը ճեղքելու համար: Արուն դնչի երկու կողմերից սուր-սուր ժանիքներ ունի, որոնցով պաշտպանվում է և հարձակվում: Այդ ժանիքները և ահագին ուժը վարազին ավելի վտանգավոր են դարձնում, քան արջն է: Աչքերը մանր են ու անգույն, վատ է տեսնում. եթե ծառն ի վեր անշարժ կանգնած մնաս՝ խուճապի ժամանակ կարող է կողքովդ անցնել ու չնկատել քեզ: Դրա փոխարեն թըշնամու հոտը կարող է առնել 500 մետր հեռավորությունից և իր սուր ականջներով լսել նրա դավադիր շշուկը: Դունչը երկար է և հարմարեցրած հող փորելուն: Փորում է ու փորում: Բույսերի արմատները նրա սիրած կերն են: Կոշտ մազերով ցից բաշ ունի, մարմնի առաջնամասը հաղթ է, գավակը՝ ցածր: Համսակով փոքր է թվում, բայց «տռուկ» մարմին ունի և ծանր քաշ. 1951 թվականին Ջերմուկում մի վարազ խփեցինք, որ մի մետր բարձրություն էլ չէր ունենա, բայց կշռեցինք՝ 167 կիլոգրամ քաշ ուներ: Արենի գյուղի որսորդները այդ տարիներին մի վարազ էին խփել, 250 կգ քաշ ուներ: Սակայն այդպիսի վարազները բացառություն են. մեզ մոտ հասակավոր արուի միջին քաշը 100—120 կիլոգրամ է, էգինը՝ 80—90 կիլոգրամ:



*Ջերմուկում մեր խփածը այսպիսի մի վարազ էր:*

Եթե կերն առատ է, աշնանը վարազը շատ է գիրանում: Ջերմուկում խփած մեր վարազի ճարպի հաստությունը 5—6 սանտիմետրի էր հասնում և միայն որովայնի խոռոչում 16 կիլոգրամ ճարպ էր կուտակված:

Ինչո՞վ է կերակրվում վարազը: Ամեն ինչով. նա ամենակեր է: Իհարկե, ամենից շատ պտուղներ է ու-










## ՌԱԴԻՈԿԱՅԱՆ ԵՂՋԵՐՈՒՆ

Ուշադրությո՛ւն: Թնդանոթի նշանոցի շրջանակում կետ ձուկ է երևում: Կրա՛կ: Որսատեգը թնդանոթից սուրալով մխրճվում է կետի մարմինը: Բայց ինչո՞ւ կետորսները չեն շտապում դեպի



վիրավոր հսկան: Ինչո՞ւ որսատեգին կապված պարանով չեն քաշում նրա մարմինը: Որովհետև պարանի փոխարեն որսատեգին ամրացված է փոքրիկ ավտոմատ ռադիոհաղորդիչը, իսկ կետը վերածվել է ռադիոփարոսի: Կրակոցը բավականին զգուշավոր էր, վերքը մահացու չէ: Այժմ, ուր որ է, կմոտենա կետերի նախիրը. կետորսները կհետևեն նրանց՝ ուղղություն վերցնելով ըստ ռադիոկայանկետից տրվող ազդանշանների:

Սովետական գյուտարարները հաջողությամբ փորձարկել են կետային ռադիոփարոսը: Բայց մի՞թե եղջերուների, ձիերի երամակները, ոչխարի հոտերը կարիք չունեն այդպիսի ռադիոփարոսների: Թզուկ ռադիոհաղորդիչը, մի բոժոժիկի մեծությամբ, թե որ հագցվի կենդանու ականջին, հովվին կօգնի իսկույն նեթ գտնել կորած չորքոտանուն:



*Բրիտանական թանգարանում պահվում է շախմատային մի նավակ, որով Անգլիայի թագավոր Չարլզ II Ստյուարտը ջախջախել է իր մոտ ուղարկված մարդասպանին: Այդ ֆիգուրը իր մեծությամբ կարմանք է հարուցում այցելուի մեջ, որը սովոր է շախմատը պատկերացնել ժամանակակից համեստ չափսերով: Պատմության մեջ հայտնի են դեպքեր, երբ շախմատային ֆիգուրների միջոցով փորձել են ոչ միայն սպանել, այլև փրկել որևէ մեկին: Նապոլեոնի համար Սուրբ Հեղինե կղզին տարված շախմատը պատրաստված էր փղոսկրից ու սաղափից, իսկ ֆիգուրների մեջ տեղավորվել էին աքսորված կայսրի փախուստի պլանը: Նապոլեոնը խաղում էր այդ շախմատով, բայց այդպես էլ մինչև վերջ անտեղյակ մնաց գաղտնիքին, որովհետև նա, ով պետք է գործը գլուխ բերեր, սպանվել էր ճանապարհին:*

---

տում և բուսեղեն, բայց կարող է ուտել նաև լեշ, մանր կենդանիներ, սողուններ, թռչունների ձվեր, ձագեր:

Շատ կգույշ կենդանի է: Մուղանի շամբուտներում շրջելիս մի քանի անգամ խշրտոցով անցել եմ կողքովը, անշարժ է մնացել, որ տեղը չմատնի: Սիսիանի Գետաթաղ գյուղի վերևում շրջապատեցինք մի կալի չափ մացառուտ, աղմկեցինք, կրակեցինք, չկարողացանք դուրս հանել մեջը թաքնված խոզին: Քոփ եղեգնուտներում խուճապարարները խոզերի բոլուկը քշեցին դեպի մեր թաքստոցը, ճահճի ցեխը չփչփացնելով մոտեցան մեկ ու լռեցին, սսկվեցին, ինչ արինքչարինք՝ տեղներիցը չշարժվեցին ու այդպես էլ թաքնըված անհայտ մնացին եղեգնուտի խորը ծովի մեջ, որովհետև կզացել էին, որ մենք դարանում սպասում ենք իրենց...

Լռակյաց կենդանի է նաև, այնպես կքայլի անտառում, եղեգների մեջ, այնպես կեր կճարի, այնպես ձագերին կսաստի, որ շրջակայքում ոչ ոք չլսի նրա ձայնը: Բայց դեկտեմբերին սկսվում է վարազների «հարսանեկան շրջանը» և արու վարազները դառնում են անկգույշ: Կռվում են նրանք իրար հետ, իրենց նշտար ժանիքներով վերքեր են հասցնում իրար, իսկ մայր խոզերը համբերատար սպասում են, թե նրանցից ով կհաղթի...

Արաքսի ափին, մարտ ամսին, իսկ լեռներում՝ ապրիլին, թավուտի գաղտնարաններում աշխարհ են գալիս վարազի ձագերը: Նիհար կամ երիտասարդ խոզը քիչ ձագ է բերում՝ 4—6 հատ, իսկ հասակավորը և գերը՝ երբեմն 7—10 ձագ: Վայրի խոճկորները պաշտպանական գույն ունեն՝ նրանց մարմնի երկարությամբ սև ու գորշ շերտեր կան, որոնցով դժվար են նկատվում եղեգների, խոտերի, մացառների մեջ:

Սկզբում մի առնետի չափ է լինում ձագը, բայց արագ աճում և ամռան վերջին մի այծյամի քաշ է ունենում՝ մոտ 20 կիլոգրամ, մեկ տարեկան հասակում արդեն 40 կիլոգրամ, իսկ մեկ և կես տարեկան արվի կշիռը հասնում է մինչև 80 կիլոգրամի: Երկու տարեկան խոզը կարող է մայր դառնալ:

Վերջացնենք: Հաջորդ անգամ կծանոթանանք եղջերվին՝ մեր անտառների թագուհուն:

## ԷԼԵԿՏՐՈՆԱՅԻՆ ՀՈՎԻՎ



Ռադիոէլեկտրոնիկայի միջոցով կարելի է ոչ միայն հետևել կենդանիներին, այլև սեփական կամքը թելադրել նրանց: Առաջին փորձերն այսպիսին են. կենդանու ուղեղի մեջ խրում են պլատինե էլեկտրոդներ: Էլեկտրոդները միացնում են փոքրիկ ռադիոհաղորդիչին, որը ամրացված է կենդանու վզկապի վրա: Ռադիոազդանշանները ուժեղացվում են այդ ընդունիչի միջոցով և էլեկտրոդներով գնում դեպի ուղեղը: Կենդանին քարանում է սարսափից, նետվում դեպի մսուրը կամ հանդարտ ետ քաշվում սիրած ուտելիքից: Ամեն ինչ կախված է այն բանից, թե ազդանշանը ուղեղի ո՛ր մասին է տրվում, ի՛նչ ուժով և ի՛նչ հաճախականությամբ: Ուրեմն, հնարավոր է դառնում հեռվից, ռադիոյով, հրամայել խոյին՝ հոտի առաջապահին: Կարելի է նեղն ընկած եղջերուներին հուսադրել, ստիպելով, որ նրանք խիզախորեն դիմադրեն գիշատիչներին կամ բքից ապատվելու համար քաշվեն պատսպարանները: Այսպես, գուցե և փոփոխության ենթարկվի ամենահին և ամենաանփոփոխ մասնագիտությունը՝ հովվությունը: Հովիվը կվերածվի դիսպետչերի, որը ռադիոյով կիրամայի անասունների բազմամբոխ բանակներին:

## ՈՒՂՂԱԹԻՌԻ ՕԳՆՈՒԹՅԱՄԲ



*Խնձորի, սալորի, կեռասի բերքը հավաքելու համար երբեմն ավելի աշխատանք է պահանջվում, քան այդ բերքն աճեցնելիս: Օրինակ, 100 կգ. սալորը բանվորն հավաքում է մոտ չորս ժամում: Շատ է, չէ՞: Այդ պատճառով էլ ինժեներները հնարել են մի մեքենա, որը հավաքում է հասած խնձորը, սալորը, տանձը՝ մի փչելով, մի շնչով: Ավելի ճիշտ, ոչ թե հավաքում, այլ փչում թափում է: Հզոր օդափոխիչը ծառի տակ «փոթորիկ» է անում և հասուն մրգերը թափվում են բրեզենտե սփռոցին: Բայց ամենահզոր օդափոխիչը... դա ուղղաթիռն է: Գյուղատնտեսական ավիացիայի մասնագետներն առաջարկում են այդ թռչող օդափոխիչը հարմարեցնել մրգահավաքի համար:*

## ԻՆՉՈ՞Ւ Է ՖԼԱՄԻՆԳՈՆ ՎԱՐԴԱԳՈՒՅՆ

Այս հարցը ծագեց այն ժամանակ, երբ վայրի ֆլամինգոներին կենդանաբանական այգի բերեցին, և նրանք առաջին փետրափոխումից հետո վարդագույնից դարձան սպիտակ: Գունափոխման պատճառը գտնելու համար քիմիական անալիզի ենթարկեցին թռչունի փետուրը, որտեղ այլ նյութերի հետ, հայտնաբերվեց նաև կարոտինոիդ: Ապա պարզվեց, որ դա թռչունի օրգանիզմն է անցնում նրա ամենօրյա ուտելիքի՝ ջրիմուռների, մանր խեցգետինների և առվույտի հետ: Եվ ահա, երբ սկսեցին կարոտինոիդի կրտվածք ավելացնել նրանց սննդին, կենդանաբանական այգու ֆլամինգոները առաջին իսկ փետրափոխումից վարդագույն երանգ ստացան: Դա լավ ազդեց նաև նրանց առողջության վրա:

Մի անգամ ֆլամինգոյի ճուտիկի մեջքին կարմիր բիծ երևաց: Ի՞նչ է դա, մտածեցին կենդանաբանները, գուցե մոր կտուցի՞ց է կաթել: Իսկապես, ինչո՞վ է կերակրում մայր ֆլամինգոն իր ճուտիկներին, իր կտուցով այդ ի՞նչ է լցնում նրանց բերանները: Դա կարմիր մի հեղուկ էր, և վերլուծությունը ցույց տվեց, որ նույն կարոտինոիդն է՝ արյան հետ խառն: Այդ հեղուկը գոյանում է թռչունի կերակրափողի և ստամոքսի միացման տեղում:

Երբ գաղտնիքը պարզվեց, այնուհետև ֆլամինգոներին կերակրելիս նրանց սննդի մեջ միշտ ավելացնում են կարոտինոիդ, որպեսզի թռչունները չզրկվեն բնական գույնից:

Այժմ կարոտինոիդն օգտագործվում է թռչնաբուծության մեջ ընդհանրապես. դրանով սնվող հավը ածում է թունդ դեղին դեղնուցով ձու: Դրանից է կարագն ստանում դեղնավուն երանգ և իշխան ձուկը դառնում բաց կարմրավուն: Սակայն ամենակարևորն այն է, որ կարոտինոիդը կենդանի օրգանիզմը ամրապնդող անհրաժեշտ սննդանյութերից է և օգտագործվում է նաև մարդու սննդաբաժնում ու դեղանյութերի մեջ (վիտամին A): Կարոտինոիդն ստանում են գազարից, հնդկացորենից, առվույտից, արմավից, ինչպես և սինթետիկ եղանակով:



# ՀՈՏԱՎԵՏ ՄԱՆՈՒՇԱԿ

Հոտավետ մանուշակը մեր շատ սիրված ծաղիկներից է: Ձեզանից ո՞վ է, որ չի հիշում քնքուշ մանուշակին նվիրված գեղեցիկ տողերը... Բայց շատերը, գուցե, չգիտեն, որ հոտավետ մանուշակը նաև արժեքավոր դեղաբույս է:

Հոտավետ մանուշակը բազմամյա խոտաբույս է, պատկանում է մանուշակազգիների ընտանիքին: Գարնանը՝ մարտ-ապրիլ ամիսներին ճյուղավորված կարճ կոճղարմատից դուրս են գալիս նախ երկարակոթուն սրտաձև կամ ձվաձև տերևները և ապա հոտավետ ծաղիկները:

Մանուշակը մեզանում տարածված է Ազիզբեկովի, Շամշադինի, Մեղրու, Ղափանի շրջաններում, Արցախում և այլուր: Գարնանը մանուշակ շատ կարելի է հավաքել նաև Երևանի շրջակայքի անտառներից և թփուտներից:

Այս բույսը իր մեջ պարունակում է ալկալոիդներ՝ վիոլին և վիոլակվերցետին, սապոնին, եթերային յուղեր և այլն: Շնորհիվ այդ նյութերի, մանուշակը ունի մի շարք բուժիչ հատկություններ: Մանուշակից ստացված պրեպարատները օգտագործվում են հազի դեպքում՝ իբրև քրտնեցնող և խխահան միջոց, սրտային հիվանդությունները և հոդային ռևմատիզմը բուժելու համար: Դեղագործության մեջ օգտագործվում է հիմնականում կոճղարմատն ու արմատները, երբեմն էլ նաև բույսի ամբողջ վերգետնյա մասը: Օգտագործման համար բույսերը հավաքում են աշնանը և արագությամբ չորացնում լավ օդափոխվող սենյակներում:

Մանուշակի տերևները պարունակում են A պրովիտամին և վիտամին C: Սրանք մեծ նշանակություն ունեն մարդու օրգանիզմի նորմալ գործունեության համար: Մանուշակի քնքուշ ծաղիկները պարունակում են եթերային յուղեր, որոնք օգտագործվում են անուշահոտ նյութերի արտադրության մեջ:



# ԽԱՏՈՒՏԻԿ

Դաշտում, մարգագետնում, այգում ու ճանապարհների եզրերին էլեկտրական լամպերի նման շողշողում են կամբյուղ կապմած վառ դեղին ծաղիկները: Կանցնի մի քանի օր, կհասունանան պտուղներն ու կառաջացնեն բոլորին ծանոթ խավոտ գնդիկները, իսկ քամու դեպքում իրենց փուփուլիկների օգնությամբ օդ կբարձրանան սերմիկները: Դրանք խատուտիկներն են, որոնք օգտագործվում են բժշկության մեջ որպես շատ կարևոր դեղաբույս:

Հայաստանում խատուտիկ տարածված է Ստեփանավանի, Գորիսի, Սիսիանի, Ազիզբեկովի շրջաններում, Ծաղկաձորում, Հանքավանում և այլուր:

Բազմամյա բույս է, պատկանում է բարդածաղկավորների ընտանիքին:

Խատուտիկը ժողովրդական բժշկությանը հայտնի է եղել և ներկայումս էլ օգտագործվում է որպես ազդեցիկ դեղանյութ լյարդի, լեղապարկի հիվանդությունների, դեղնախտի և շաքարախտի դեպքում: Օգտագործվում է նաև որպես ախորժակ գրգռող, մարսողական օրգանների գործունեությունը բարելավող և արյունարգել միջոց:

Դեղագործության մեջ օգտագործվում է հիմնականում բույսի արմատը, իսկ երբեմն էլ տերևները: Հումքը հավաքվում է աշնանը կամ գարնանը՝ մինչև ծաղկելը:

Խատուտիկի արմատներն ու տերևներն ունեն կարգացած կաթնանոթներ, որոնք պարունակում են տարաքսացին բյուրեղային նյութը, ինուլին և կաուչուկ: Հարուստ են նաև դաբաղանյութերով, շաքարներով և այլն:

Արմատներն ու տերևներն օգտագործվում են նաև սննդարդյունաբերության բնագավառում: Խատուտիկը կարող է ծառայել որպես շաքարի ստացման աղբյուր: Նրանից ստացվում է բարձր որակի մեղր: Պարունակում է նաև յուղեր և մեծ քանակությամբ վիտամին C, որոնք օրգանիզմի համար շատ անհրաժեշտ են:

Խատուտիկը ծաղկում է ամբողջ գարնանը՝ սկսած ապրիլ ամսից, իսկ երբեմն էլ աշնանը ծաղկում է երկրորդ անգամ:



## ԳՆԱՐԲՈՒԿ

Գնարբուկը շատ դուրեկան, յուրահատուկ հոտով խոտաբույս է: Բազմամյա է, պատկանում է գնարբուկազգիների ընտանիքին: Հողի մակերեսային շերտում ունի կարճ, ուղղահայաց բազմամյա կոճղարմատ, որից դեպի ցած է իջնում հավելյալ արմատների փունջը: Կոճղարմատից վաղ գարնանը դուրս են գալիս տերևներ, առաջացնելով մերձարմատային վարդակ, որի կենտրոնից բարձրանում է տերևազուրկ ծաղկացողունը: Վերջինս, կախված աճելավայրի պայմաններից, հասնում է 15—30 **սմ** բարձրության, որի ծայրին հովանոց են կազմում հոտավետ, դեղին ծաղիկները:

Գնարբուկը աճում է մեր մարգագետիններում, թփուտներում, նոսր ու լուսավոր անտառներում: Ծաղկում է վաղ գարնանը՝ մինչև անտառում ծառերի տերևակալումը, այդ պատճառով էլ շատ շրջաններում նրան անվանում են նաև գարնանածաղիկ:

Հայաստանում մեծ տարածում ունի՝ հանդիպում է ինչպես հարավային շրջաններում (Ղափան, Գորիս, Սիսիան) այնպես էլ կենտրոնական և հյուսիսային շրջաններում (Կիրովական, Ղուկասյան, Շամշադին և այլն):

Գնարբուկը շատ արժեքավոր դեղաբույս է: Անցյալում օգտագործում էին միայն բույսի արմատներն ու ծաղիկների պսակները, որպես քրտնեցնող միջոց մրսածության և հազի դեմ: Ծաղիկներն ու արմատները պարունակում են մեծ քանակությամբ գլյուկոզիդներ, սապոնիններ, եթերային յուղեր, դաբաղանյութեր և այլն: Շնորհիվ այդ նյութերի առկայության, գնարբուկի պրեպարատները ներկայումս օգտագործում են նաև բրոնխիտի դեպքում, որպես խխահան միջոց և շնչառական ուղիների լորձաթաղանթի գործունեության բարելավման համար:

Հետագա ուսումնասիրություններից պարզվեց, որ գնարբուկի տերևները նույնպես շատ արժեքավոր են որպես կարոտինի և վիտամին C-ի հարուստ աղբյուր: Տերևները սալաթի կամ բուսաջրի ձևով կարելի է օգտագործել վիտամինների պակասության՝ գլխավորապես լնդախտի դեպքում: Այն պետք է հավաքել ծաղկման սկզբին՝ վիտամինների պարունակության առատ շրջանում:

Արմատների հավաքը պետք է կատարել կա՛մ վաղ գարնանը՝ մինչև տերևների առաջանալը, կա՛մ աշնանը, երբ բույսի վերգետնյա մասը սկսում է թառամել և չորանալ: Հումքը հավաքելուց հետո անհրաժեշտ է արագությամբ չորացնել բաց օդում կամ օդափոխվող սենյակում:



## ԾՏԱՊԱՇԱՐ

Ծտապաշարը սպիտակ, մանր ծաղիկներով միամյա խոտաբույս է: Արտաքին տեսքով կամ ծաղիկների բուրմունքով այնքան էլ գրավիչ ու աչքի ընկնող չէ, սակայն իր բուժիչ հատկությունների շնորհիվ ընդհանուր ճանաչում է գտել:

Պատկանում է խաչածաղկավորների ընտանիքին և ինչպես իր ընտանիքի մյուս ներկայացուցիչները, ունի խաչաձև դասավորված չորս բաժակաթերթ և չորս պսակաթերթ: Պտուղը պատիճ է եռանկյունաձև՝ այն պարկի նման, որ մի ժամանակ կրում էին հովիվները, այդ նմանության համար շատ ժողովուրդներ նրան անվանում են «հովվապարկ»:

Տարածված է ամբողջ երկրագնդով մեկ, չի աճում միայն Արկտիկայում և արևադարձային գոտում:

Մեզ մոտ ամենուրեք տարածված մոլախոտ է, հանդիպում է այգիներում, մարգագետիններում, ցանքերում և այլ տեղերում:

Բույսի չափերը, կախված աճելավայրի պայմաններից, խիստ փոփոխական են: Չոր վայրերում այն չի գերազանցում 5 **սմ**-ից, իսկ խոնավ և պարարտ վարելահողերում հասնում է մինչև 50 **սմ** բարձրության:

Որպես դեղանյութ օգտագործվում է բույսի ամբողջ կանաչ զանգվածը, այն իր մեջ պարունակում է բուրսին, խոլին, ացետիլխոլին, եթերային յուղ, դաբաղանյութեր, խնձորաթթու, կիտրոնաթթու և մի շարք այլ քիչ հայտնի նյութեր:

Ծտապաշարը ժողովրդական բժշկության մեջ հայտնի է դեռ շատ վաղ ժամանակաշրջանից և հաջողությամբ կիրառվել է որպես արյունահոսությունը արգելող միջոց: Նրա այդ հատկությունը հետագայում հաստատվել է գիտության կողմից: Ներկայումս էլ նրա պրեպարատները լայն կիրառություն ունեն բժշկության մեջ որպես արյունարգել և միզամուղ միջոց:

Ծտապաշարը ունի ծաղկման երկար շրջան, սակայն որպես դեղահումք այն պետք է հավաքել ծաղկման սկզբնական շրջանում, երբ դեռ պտուղները չեն հասունացել: Հումքը չորացվում է բացօթյա, ստվերում:

*Վ. ՈՍԿԱՆՅԱՆ*

*Կենսաբանական գիտությունների թեկնածու*




ԳԵՆՆԱԴԻ ՑԻՖԵՐՈՎ

Հանս Քրիստիան Անդերսենը ծնվել է Կոպենհագենում: Զբոսաշրջիկներն ասում են, որ փոքրիկ Կոպենհագենը շատ գեղեցիկ է: Այնտեղ ամեն տնակ նման է մի ծաղկի, իսկ ամբողջ քաղաքը՝ ծովափին պատահմամբ մոռացված մի մեծ ծաղկեփնջի:

Ասում են նաև, որ Կոպենհագենում միշտ խաղաղ է: Եվ այն օրն էլ խաղաղ էր:

Ոչ, պարզապես մեկն ասել է. «Կոշկակար Անդերսենը երևի տոնը է ունեցել: Լսո՞ւմ եք: Ծերուկըն այսօր չի թխկթխկացնում»:

Բայց հետևյալ օրը բոլորն արդեն մոռացել էին այդ մասին:

Ծերուկ Անդերսենն առաջվա պես թխկթխկացնում էր, կարկատելով իր պատվիրատուների կոշիկների տակերն ու կրունկները: «Թի՜կ... թա՜կ... թա՜կ... թի՜կ»:

Այդպես էլ մեծանում էր փոքրիկ Հանսը այդ անդադար թխկթխկոցի տակ: Միայն երբեմն հայրը մի կողմ էր դնում մուրճը, այն էլ նրա համար, որ մի ավելորդ անգամ փառաբանի իր արհեստը: «Իսկ ի՞նչ կաներ աշխարհը առանց կոշկակարների: Ոտաբոբիկ պիտի քայլեր, որդի՛ս... այո՛, այո՛: Կոշկակարությունը շա՜տ ու շատ պատվարժան գործ է»:

Եվ իսկապես, պատվարժան կոշկակար Անդերսենի փառքը թնդում էր ամբողջ փողոցում: Բայց ծերուկ Անդերսենը չափազանց փառամոլ էր:



— Հա՜նս,— բացականչում էր նա հաճախ,— Հա՜նս, եթե դու էլ կոշկակար դառնաս, քո փառքը կթնդա ողջ Կոպենհագենով մեկ: Դու կկարկատես ուղածդ թագավորի կոշիկները, տղա՛ս:

Բայց տղան, շրջապատի կարծիքով, ծույլի մեկն էր: Արհեստ սովորելու փոխարեն, նստում էր ջրանցքների ափին ու ժամերով նայում էր, թե ինչպես են հայելանման հարթության վրայով սահում ամպերի թեթև արտացոլումները:

Վերջապես հայրը չդիմացավ. նա մեռնելուց առաջ անիծեց որդուն.

— Քեզնից բան դուրս չի գա. դու դատարկապորտ ես ու հիմար...

Ահա և բոլորը: Մնում է միայն ավելացնել, որ, երբ մեռավ ծեր Անդերսենը, նրա դագաղի ետևից գնում էր նրա ողջ փողոցը: Իսկ երբ արդեն հետո մեռավ նրա որդին՝ Հանս Քրիստիան Անդերսենը, նրա դիակառքի ետևից գնում էին տասնմեկ արքայորդի ու ինքը՝ արքան: Իսկ այդ հիշողներն ասում են, որ արքան ու արքայորդիները վարմանալի գեղեցիկ ու փառահեղ էին հագնված: Բայց նրանց կոշիկները մի փոքր մաշված էին: Բանն այն է, որ հեքիաթասացները երբեք կոշիկ չեն



Նկ. ՌՈԲԵՐՏ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

կարկատում ո՛չ արքայորդիների և ո՛չ էլ նույնիսկ թագավորների համար:

## ԳԱՐՆԱՆ ԵՐԳ

ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱՋՅԱՆ

Վարար գետակ դարձար լալով,
Թողոռ սարի վերջին ձնհալ,
Հանդ է վազում տրտինգ տալով
Վարդան պապի հորթուկը չալ:
Արևն արդեն շուտ է ծագում,
Հեռվում երգ է լսվում ու կանչ,
Միտք է անում այգին թաքուն,
Որ գիշերը ծաղկի հանկարծ:

Վեր է ելնում մշուշը նոր,
Էլ չի փայլում եղյամը պաղ,
Ծաղիկների աչիկներով
Խոնավ հողն է ժպտում ուրախ:
Տեսած հազար փորձանք ու բուք,
Տեսած ձմռան օրերը խիստ՝
Քարայծները ծործից թաքուկ
Դեպի սար են գնում հանգիստ:
Փոքրիկ ծառերն էլ չեն մրսում,
Նրանք ջուր են խմում ու ցող:
Ճնճղուկներն են բարև ասում
Սարյակներին վերադարձող:

# ՃԱՆՃՆ ՈՒ ՁԻՆ

ՊԱՏՎԱԿԱՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ

Ճանճը թառեց
Ձիու ուսին
Ու խոսք բացեց
Պոչի մասին.
Ասաց՝ պոչդ
Քեզ չի սազում,
Դու դրա հետ
Ո՞նց ես վազում։
Կախ ես տվել
Ոտներով մեկ,
Կտրիր, այ ձի,
Ինչի՞դ է պետք։—
Ձին խրխնջաց,
— Լռիր,—ասաց,—
Քանի շունչ կա
Ճանճի ցեղում,
Պոչս պիտի
Մնա տեղում։

# ԱՆՁՐԵՎ

Երկինքը ամպեց,
Ամպը գոռգոռաց,
Կայծակը փայլեց,
Ու անձրև տեղաց։

Գիշեր է իջել
Աշխարհի վրա,
Խոր քուն են մտել
Բոլորը հիմա։

Իսկ անձրևը դեռ
Թակում է անվերջ,
Անխոս, աներես,
Անկոչ հյուրի պես։

ՄԱՐԻ ՄԻՆԱՍՅԱՆ
(Երևան, № 73 դպրոց,
7-րդ դասարան)


Լույս է տեսնում 1923 թվականից



ՊԻՈՆԵՐ

№ 4 ապրիլ 1971 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝
նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ


Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՍԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԵԼԻՔՅԱՆ Ս., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

**«Пионер»** на армянском языке. Адрес редакции:
Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

*Հասցեն՝ Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15,*
*Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96։*

ՎՖ 05106։ Պատվեր՝ 163։ Տպաքանակ՝ 71600։ Տպագրական 3 մամուլ։ Ստորագրված է տպագրության 2 IV 1971 թ.։ ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ։ Երևան, Տերյան փ. № 91։

Գինը՝ 10 կ.

ԳԻՆԸ՝ 10 Կ

ԻՆԴԵՔՍ՝ 77806

ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ ԳԱՌՆԻԿ
Լենինական, Սպանդարյանի անվ. դպր., II դաս. աշ.

ՄԵՐ ԹԻՄԸ



ՓԱՐՈՂ ԱՂՋԻԿՆԵՐ

ՄԵԼԻՔԲԵԿՅԱՆ ՎԵՐԱ
Շամշադինի շրջան, Բերդ, 12 տար.